Միացեալ Կոմունիստ կուսակցութիւն Ամերիկայի

Պրօլետարներ բոլոր երկիրների միացէք

## ԿԱՐԼ ՄԱՐՔՍ ԵՒ ՖՐԻԴՐԻԽ ԷՆԳԵԼՍ

# ՄԱՆԻՖԷՍՏ

## ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ

Թարգման. Գերման. Մ. Մ.

Հրատարակութիւն Կեդրոնական Գործադիր Կոմիտէի

1920

X Տպարան

„Manifest des kommunistisehen Partei"
von Karl Marx und Friedrich Engels.

## ԱՌԱՋԱԲԱՆ 1872 Թ. ԳԵՐՄԱՆԵՐԷՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՆ

«Կոմունիստների Դաշնակցութիւնը»— մի միջազգային բանւորական կազմակերպութիւն, որը այն ժամանակւայ պայմանների մէջ բնականաբար կարող էր միայն գաղտնի լինել—1847 թւականի Նոյեմբերին Լոնդոնում գումարւած կոնգրէսում յանձնարարել է ներքոյ ստորագրեալներին կազմել հրատարակելու համար կուսակցութեան մանրամասն տեսական և գործնական ծրագիրը: Այդպիսով ծնունդ առաւ հետևեալ Մանիֆէստը, որի ձեռագիրը Փետրւարեան յեղափոխութիւնից մի քանի շաբաթ առաջ ուղարկւած էր Լոնդոն տպագրելու համար: Սկզբում Գերմաներէն հրատարակւելով, Մանիֆէստն ունեցել է այդ լեզւով Գերմանիայում, Անգլիայում և Ամերիկայում առնւազըն տասներկու տարբեր տպագրութիւններ: Անգլիերէն նա առաջին անգամ լոյս տեսաւ 1850 թ. Լոնդոնում, Red Republican-ի մէջ, Միսս Հէլլէն Մակֆէրլէնի թարգմանութեամբ, և 1871 թ. Ամերիկայում, առնւազն երեք տարբեր թարգմանութիւններով: Ֆրանսերէն լոյս տեսաւ Փարիզում, 1848 թ. Յունիսեան ապստամբութիւնից քիչ առաջ, վերջերումս էլ Նիւ-Իորկի Le Socialiste-ի մէջ: Այժմ պատրաստւում է մի նոր թարգմանութիւն: Լեհերէն տպագրւել է Լոնդոնում, առաջին Գերմաներէն հրատարակութիւնից անմիջապէս յետոյ: Ռուսերէն—Ժընեւում վաթսունական թւականներին: Դանիերէն թարգմանւել է նոյնպէս իսկոյն իր լոյս տեսնելուց յետոյ:

Որչափ էլ հասարակական յարաբերութիւնները փոխուած լինեն վերջին 25 տարիներում, այնուամենայնիւ այս Մանիֆէստի մէջ արտայայտած ընդհանուր սկզբունքները ամբողջութեամբ վերցրած, պահպանել են մինչեւ օրս իրենց լիակատար ճշտութիւնը։ Հարկաւոր է միայն ուղղել մի քանի մասնաւոր կէտեր։

Այդ սկզբունքների գործնական կիռարումը, ինչպէս Մանիֆէստն ինքը յայտարարում է, ամենուրէք եւ ամեն ժամանակ կախուած պիտի լինի պատմականօրէն տրուած հանգամանքներից, հետեւապէս և չպիտի առանձին նշանակութիւն տալ երկրորդ գլխի վերջում առաջարկուած յեղափոխական միջոցներին։ Այդ մասը ներկայումս շատ կէտերում պէտք է փոփոխել։ Ինկատի առնելով խոշոր արդիւնաբերութեան հսկայական զարգացումը վերջին 25 տարուայ ընթացքում և նրա հետ զուգընթացաբար առաջդիմող բանուոր դասակարգի կուսակցական կազմակերպութիւնը. ինկատի առնելով գործնական փորձառութիւնը՝ նախ փետրուարեան յեղափոխութեան, ապա աւելի եւս Փարիզի Կոմունայի ժամանակ, երբ պրոլետարիատը առաջին անգամ երկու ամիս շարունակ իր ձեռքն էր առել քաղաքական իշխանութիւնը, —պէտք է ասել, որ վերոյիշեալ գործնական ծրագիրը տեղ —տեղ արդէն հնացել է։ Փարիզի կոմունան ապացուցեց, որ «բանուոր դասակարգը չի կարող իր ձեռքն առնել պատրաստի պետական մեքենան և գործադրել նրան յօգուտ իր սեփական շահերի» (տես «Քաղաքացիական պատերազմ Ֆրանսիայում», Միջազգային բանուորական Դաշնակցութեան Ընդհանուր խորհրդի դիմումը, Գերմ. տպագրութիւն, երես 19 ուր այդ մասին մանրամասն խօսւում է)։ Յետոյ ինքնատինքեան հասկա-

նալի է, որ սոցիալիստական գրականության քննադատությունը ներկայիս համար թերի է, որովհետեւ հասնում է միայն մինչեւ 1847 թիվը: Նոյնպէս և նկատողութիւնները կոմունիստների վերաբերմունքի մասին դէպի զանազան դիմադրական կուսակցութիւնները (գլուխ IV), թէպէտև ներկայումս ընդհանուր գծերով ճիշտ են, բայց եւ այնպէս իրենց մանրամասնութիւնների մէջ հնացած են, այն պատճառով արդէն, որ քաղաքական դրութիւնը բոլորովին փոխւել է և պատմական զարգացումն անհետացրել է հասարակական ասպարէզից յիշած կուսակցութիւնների մեծ մասը:

Սակայն Մանիֆէստը մի պատմական դոկումենտ է, որը փոփոխել մենք մեր իրաւունքը չենք համարում: Թերևս հետեւեալ հրատարակութեանը կցւի մի ներածութիւն, որը կընդգրկէ 1847 թւականից մինչեւ մեր օրերը հասնող ժամանակամիջոցը: Ներկայ արտատպութիւնը կատարւեց մեզ համար բոլորովին անսպասելի կերպով, այնպէս որ մենք ժամանակ չունեցանք այդ անելու:

Լօնդօն 24 Յունիսի 1872

ԿԱՐԼ ՄԱՐՔՍ: ՓՐԻԴՐԻԽ ԷՆԳԷԼՍ

# ԱՌԱՋԱԲԱՆ 1883 Թ. ԳԵՐՄԱՆԵՐԷՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՆ

*Ներկայ հրատարակութեան առաջաբանը, աւ՜աղ, ես պէտք է միայնակ ստորագրեմ։ Մարքսը— այն մարդը, որին Եւրոպայի եւ Ամերիկայի համայն բանւոր դասակարգը աւելի է պարտական, քան թէ որևէ մի ուրիշին—Մարքսը յանգչումէ այժմ Խայգետի գերեզմանոցում, և նրա շիրիմի վրայ բուսել է արդէն առաջին խոտը։ Նրա մահից յետոյ Մանիֆէստի մշակման լրացման մասին խօսք անգամ չի կարող լինել այլեւս։ Բայց հէնց այդ պատճառով ես աւելի եւս կարեւոր եմ գտնում նորից վճռականապէս յայտնել այստեղ հետեւեալը։*

*Մանիֆէստի հիմնական միտքը՝ որ տնտեսական արդիւնագործութիւնը և նրանից անհրաժեշտօրէն բղխող բաժանումը հասարակութեան մէջ մի որևէ պատմական դարեշրջանում կազմում են այդ դարեշրջանի քաղաքական եւ մտաւորական պատմութեան հիմքը. որ հետեւապէս ամբողջ պատմութիւնը (նախնական համայնական հողատիրութեան քայքայումից յետոյ) դասակարգային կռիւների պատմութիւն է եղել՝ շահագործւողների և շահագործողների, ենթարկւած և տիրող դասակարգերի միջև, հասարակական զարգացման զանազան շրջաններում. որ այդ կռիւը ներկայումս արդէն հասել է մի աստիճանի, երբ շահագործւող եւ ճնշւած դասակարգը (պրոլետարիատը) չի կարող այլ եւս ազատւել շահագործող ճնշող դասակարգից (բուրժուազիայից), առանց ազատելու միաժամանակ և ընդմիշտ ամբողջ հասարակու-*

*թիւնը շահագործութիւնից, ճնշումից և դասակարգային կռիւներից.—այդ հիմնական միտքը պատկանում է միայն և բացառապէս Մարքսին: ա)*

*Ես շատ անգամ արդէն ասել եմ այդ. բայց այժմ առանձնապէս հարկաւոր է յիշել այդ մասին Մանիֆէստի առաջաբանում:*

*Փրիդրիխ Էնգելս*

*Լոնդոն 28 Յունիսի 1883*

---

*ա) «Այդ մտքին, —ասում եմ ես Անգլիերէն թարգմանութեան առաջաբանում, —որը իմ կարծիքով կոչուած է հիմք դառնալու պատմական գիտութեան նոյն տեսակ առաջդիմութեան համար, ինչ տեսակ Դարվինի թէօրիան եղել է բնագիտութեան վերաբերմամբ, այդ մտքին մենք երկուսս էլ հետզհետէ մօտեցել էինք 1845 թուականից դեռ մի քանի տարի առաջ: Թէ որ աստիճան եմ ես ինքնուրոյնաբար առաջ ընթացել այդ ուղղութեամբ, այդ ցոյց է տալիս իմ «Բանւոր դասակարգի դրութիւնը Անգլիայում» աշխատութիւնը: Իսկ երբ 1845 թ. գարնանը ես հանդիպեցի Մարքսին Բրիւսելում, նա արդէն վերջնականապէս մշակել էր այդ միտքը և ներկայացրեց ինձ համարեայ նոյն պարզ խօսքերով, որոնցով ես այդ վերև արտայայտեցի»:*

## ԱՌԱՋԱԲԱՆ 1890 Թ. ԳԵՐՄԱՆԵՐԷՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՆ

Նախորդ տողերը գրելուց յետոյ։ կրկին անհրաժեշտ դարձաւ Մանիֆէստի մի նոր Գերմաներէն տպագրութիւն. միեւնոյն ժամանակ տեղի ունեցան Մանիֆէստի հետ կապ ունեցող մի քանի անցքեր, որոնց հարկաւոր է այստեղ յիշատակել։

1882 թ. ժընեւում լոյս տեսաւ Վէրա Զասուլիչի բ) ձեռքով կատարուած երկրորդ Ռուսերէն թարգմանութիւնը, որի առաջաբանը գրել էինք Մարքսը և ես։ Ահաւասիկ նա։

«Կոմունիստական կուսակցութեան Մանիֆէստի առաջին Ռուսերէն հրատարակութիւնը լոյս է տեսել Բակունինի թարգմանութեամբ վաթսունական թուականների սկզբներում «Կոլոկոլ»-ի տպարանում։ Այն ժամանակ այդ գրուածքի ռուսերէն հրատարակութիւնը Արեւմուտքում ունէր միայն գրականական կուրիօզի նշանակութիւն։ Այդպիսի մի հայեացք այսօր այլեւս անկարելի է դարձել։ Թէ որքան սահմանափակ է եղել պրոլետարական շարժման ծաւալը Մանիֆէստի առաջին հրատարակութեան շրջանում (Դեկտեմբեր 1847 թ.), այդ պարզ երեւում է նրա վերջին գլխից՝ «Կոմունիստների վերաբերմունքը դէպի զանազան դիմադրական կուսակցութիւնները»։ Այդտեղ բացակայ են ամենից առաջ Ռուսաստանը և Միացեալ Նա-

---

բ) Էնգէլսը սխալւում է. այդ ռուսերէն թարգմանութիւնը պատկանում է Գէորգի Պլեխանովին։ Մ. Մ.

հանգները։ Դա այն ժամանակն էր, երբ Ռուսաստանը ներկայացնում էր եւրոպական ռէակցիայի վերջին հզօր պահեստը և երբ գաղթականութիւնը դէպի Միացեալ Նահանգները կլանում էր եւրոպական պրօլետարիատի աւելորդ ուժերը։ Այդ երկու երկիրները մատակարարում էին առատօրէն հում նիւթեր եւրոպային և միեւնոյն ժամանակ ծառայում էին իբրեւ վաճառանոց, ուր արտահանում էին եւրոպական արդիւնաբերութեան արդիւնքները։ Հետեւաբար, այսպէս թէ այնպէս նրանք երկուսն էլ պատւար էին եւրոպայի հասարակական կազմի համար։

«Որք՛ան փոխուել են այսօր այդ բոլորը։ Հէնց այդ եւրոպական գաղթականութիւնը նպաստեց Հիւսիսային Ամերիկայի երկրագործութեան զարգացման, որն իր մրցութեամբ ցնցում է եւրոպայի թէ խոշոր եւ թէ մանր հողային սեփականութեան հիմքերը։ Միեւնոյն ժամանակ նա հնարաւորութիւն տուեց Միացեալ Նահանգներին շահագործելու սեփական հարուստ արդիւնաբերական աղբիւրները այնպիսի չափերով եւ այնպիսի եռանդով, որ կարճ ժամանակամիջոցում դա պէտք է վերջ դնէ Արեւմտեան եւրոպայի արդիւնաբերական մենաշնորհին։ Եւ այդ երկու հանգամանքներն Ամերիկայի վրայ եւս ազդում են յեղափոխիչ կերպով։ Ինքնուրոյն Ֆարմըրների մանր ու միջակ հողային սեփակականութիւնը—Ամերիկայի ամբողջ քաղաքական կազմի այդ հիմքը—աւելի ու աւելի է յաղթահարւում հսկայ Ֆարմըրների մրցութեամբ, մինչդեռ միաժամանակ արդիւնաբերական շրջաններում, կապիտալի առասպելական կենտրոնացման հետ, զարգանում է առաջին անգամ մի բազմաթիւ պրօլետարիատ։

«Անցնենք Ռուսաստանին։ 1848—49 թուականների յեղափոխութեան շրջանում ոչ միայն եւրոպական միապետները, այլ եւ եւրոպական բուրժուաները իրենց միակ փրկութիւնը նոր ոյժ առնող պրոլետարիատից տեսնում էին Ռուսա՚յան միջամտութեան մէջ։ Ցարը յայտարարուեց եւրոպական ռէակցիայի պարագլուխ։ Այսօր նա բանտարկուած է Գատչինայում, որպէս յեղափոխութեան գերի, և Ռուսաստանը ներկայացնում է եւրոպայի յեղափոխական շարժման առաջապահ գունդը»։

«Կոմունիստական Մանիֆէստի նպատակն էր՝ յայտարարել ժամանակակից բուրժուական սեփականութեան վերահաս ճակատագրական անկումը։ Բայց Ռուսաստանում, տենդային արագութեամբ զարգացող կապիտալիստական կարգերի եւ միայն ներկայումս գոյացող բուրժուական հողային սեփականութեան հետ միասին, մենք գտնում ենք հողերի մեծ կէսը գիւղացիների ձեռքում, որպէս համայնական սեփականութիւն։

«Հարց է ծագում. կարո՞ղ է արդեօք Ռուսական համայնքը—նախնական կոլեկտիւ հողային սեփականութեան այդ յամենայն դէպս շատ քայքայուած ձեւը—անմիջապէս փոխուել հողային սեփականութեան աւելի բարձր, կոմունիստական ձեւի, թէ, ընդհակառակը, նա դեռ պէտք է անցնէ քայքայման նոյն պրոցէսը, որով բնորոշւում է Արեւմուտքի պատմական զարգացումը։

«Միակ պատասխանը, որ այսօր կարելի է տալ այդ հարցին, հետեւեալն է։

Եթէ Ռուսական յեղափոխութիւնը ազդանշան եղաւ Արեւմտեան բանւորական յեղափոխութեան հա-

մար, այնպէս որ երկու յեղափոխութիւնները լրացընեն իրար, այն ժամանակ Ռուսական ներկայ համայնական հողատիրութիւնը կարող է կոմունիստական զարգացման ելակէտը դառնալ:

Լոնդոն 21 Յունուարի 1882.

Միևնոյն ժամանակ լոյս է տեսել Ժընևում մի նոր Լեհական թարգմանութիւն. Manifest Kommunistyczny.

Յետոյ հրատարակուել է մի նոր Դանիական թարգմանութիւն "Social-democratisk Bibliothek"-ում, Կոպէնհագէն, 1885: Դժբախտաբար նա լիակատար չէ. մի քանի նշանաւոր տեղեր, որոնք, թւում է, թարգմանչին դժուարութիւններ են պատճառել, բաց են թողնուած, և առհասարակ այստեղ- այնտեղ նշմարւում են շտապման հետքեր, որոնք այնքան աւելի անհաճելի են թւում որքան թարգմանութեան միւս մասերից երևում է, որ եթէ մի փոքր աւելի խնամք տարուէր, թարգմանութիւնը կարող էր բաւական յաջող լինել:

1886 թ. Փարիզի Le Socialiste-ի մէջ լոյս տեսաւ մի նոր Ֆրանսերէն թարգմանութիւն մինչև օրս եղած հրատարակութիւնների մէջ դա լաւագոյնն է:

Դրանից յետոյ միևնոյն տարին լոյս տեսաւ մի Սպանիական թարգմանութիւն Մադրիդի "El Socialista"-ի մէջ, որը յետոյ տպագրուեց առանձին գըրքոյկով. "Manifesto del Partido Communista Por Carlos Marx y F. Engels, Madrid Administracion de El Socialista, Hernan Cortes 8 ".

Ինչպէս կուրիոզ պէտք է յիշել, որ 1887 թ.

Կ. Պօլսի մի հրատարակչի առաջարկել են Մանիֆէստի Հայերէն թարգմանութեան ձեռագիրը. բարի մարդը քաջութիւն չի ունեցել տպագրելու Մարքսի անունը կրող մի աշխատութիւն եւ խորհուրդ է տուել թարգմանչին՝ Մարքսի փոխարէն դնել իր անունը։ Թարգմանիչը մերժել է այդ առաջարկը։

Անգլիայում, մի քանի շատ թէ քիչ սխալ Ամերիկեան թարգմանութիւններ արտատպելուց յետոյ, 1888 թ. լոյս տեսաւ վերջապէս մի ճիշտ թարգմանութիւն։ Թարգմանութիւնը արել է իմ ընկեր Սամուել Մօօրը եւ տպագրուելուց առաջ՝ նա նորից խմբագրուել է մեր երկուսիս կողմից։ Նրա վերնագիրն է. Manifesto of the Communist Party, by Karl Marx and Frederick Engels. Authorised English Translation. Edited and annotated by Frederick Engels. 1888. London, William Reeres, 185 Fleet st E. C. Այդ հրատարակութեան մէջ տրուած նկատողութիւններից մի քանիսը մտել են ներկայ հրատարակութեան մէջ։

Մանիֆէստն ունեցել է իր ճակատագիրը։ Իր լոյս տեսնելու առաջին օրերում նա ոգեւորութեամբ ողջոյնուեցաւ գիտական սօցիալիզմի այն ժամանակ դեռ փոքրաթիւ առաջագունդի կողմից, ինչպէս այդ մասին վկայում են առաջին առաջաբանի մէջ յիշատակուած թարգմանութիւնները։ Ապա շուտով, 1848 թուականի Փարիզի բանուորների Յունիսեան պարտութեան հետ սկսուած ռէակցիայի շնորհիւ, նա մատնուեց մոռացութեան, իսկ յետոյ, Կեօլնի կոմունիստների 1852 թ. Նոյեմբերի դատապարտութեամբ, նա յայտարարուեց «օրէնքից դուրս»։ Երբ Փետրուարեան յեղափոխութիւնից ծագած բանուորական շարժումը

բոլորովին անհետացաւ հասարակական ասպարիզից, եւ մղուեց բեմից նոյնպէս եւ Մանիֆէստը:

Երբ բանուոր դասակարգը Եւրոպայում դարձեալ բաւականաչափ զօրեղացաւ՝ իշխող դասակարգերի դէմ նոր գրոհ տալու համար, այն ժամանակ ծնունդ առաւ «Միջազգային բանուորական Դաշնակցութիւնը»: Նրա նպատակն էր ձուլել Եւրոպայի եւ Ամերիկայի բովանդակ մարտնչող բանուոր դասակարգը մի մեծ զինուորական բանակի մէջ: Դրա համար նա չէր կարող իբրեւ ելակէտ ընդունել Մանիֆէստի մէջ արտայայտած սկզբունքները. նա պէտք է ունենար այնպիսի մի ծրագիր, որը հնարաւորութիւն տար միանալու թէ Անգլիական տրէդ-իւնիոններին, թէ Ֆրանսիական, Բելգիական, Իտալական և Սպանիական պրուդոնիստներին եւ թէ Գերմանական Լասալեաններին: գ) Այդ ծրագիրը—Ինտերնացիոնալի կանոնադրութեան հիմնական սկզբունքները—կազմուած էր Մարքսի ձեռքով այնպիսի վարպետութեամբ, որը խոստո-

---

գ) Մեզ հետ յարաբերութիւններ ունենալիս, Լասալն անուանում էր իրեն Մարքսի «աշակերտ» եւ, որպէս այդպիսին, կանգնած էր բնականաբար Մանիֆէստի սկզբունքների հողի վրայ: Այլ էին Լասալի այն համախոհները, որոնք նրա պահանջած «պետական կրեդիտով հիմնելիք արդիւնաբերող ընկերութիւններից» հեռու չէին գնում և ամբողջ բանուոր դասակարգը բաժանում էին երկու մասի. ինքնօգնութեան կողմնակիցների և պետական օգնութեան կողմնակիցների:

վանում էին մինչեւ անգամ Բակունինը եւ անիշխանականները։ Մանիֆէստի մէջ արծարծած դրութիւնների վերջնական յաղթանակը Մարքսը սպասում էր միայն եւ միայն բանւոր դասակարգի մտաւոր զարգացումից, որը պէտք է անհրաժեշտօրէն կատարուէր շնորհիւ բանւորների միացած գործակցութեան և փոխադարձ շփման։ Դէպքերը եւ կապիտալի դէմ մըղւող կռւի փոփոխական փորձերը, պարտութիւնները աւելի քան աջողութիւնները, պէտք է պարզէին մաքառողներին նրանց մինչայժմեան համաշխարհային դարմանների անբաւարարութիւնը, պէտք է ընդունակ դարձնէին նրանց ուղեղները՝ աւելի հիմնաւոր կերպով ըմբռնելու բանւորների ազատագրութեան իսկական պայմանները։ Եւ Մարքսն իրաւացի էր։ Բանւոր դասակարգը 1874 թւականին, Ինտերնացիոնալի լուծման ժամանակ, բոլորովին այլ էր, քան 1864 թւականին, Ինտերնացիոնալի հիմնադրութեան ժամանակ։ Պրուդօնիզմը Ռոմանական երկրներում եւ ինքնօրինակ Լասալեանիզմը Գերմանիայում արդէն անհետանալու վրայ էին եւ մինչեւ անգամ այն ժամանակւայ Անգլիական ծայրայեղ պահպանողական դրէյդս-իւնիոնները հասել էին փոքր առ փոքր այնպիսի դրութեան, որ 1877 թ. Սվանսիայում կայացած նրանց կօնգրէսի նախագահը կարողացաւ ասել կօնգրէսի անունից. «ցամաքային սօցիալիզմը կորցրել է մեզ համար իր սարսափը»։ Բայց ցամաքային սօցիալիզմը 1887 թ. գրեթէ դեռ եւս միայն Մանիֆէստի մէջ արտայայտւած թէօրիան էր։ Այդպէս Մանիֆէստի պատմութիւնը՝ սկսած 1848 թւականից։ Այսօր Մանիֆէստը — համայն սօցիալիստական գրականու-

թեան այդ, անտարակոյս, ամենաշատ տարածուած և ամենամիջազգային արդիւնքը — ներկայացնում է մի ընդհանուր ծրագիր ամբողջ աշխարհի միլիոնաւոր բանւորների համար, Սիբիրից մինչև Կալիֆորնիա։

Բայց եւ այնպէս, երբ նա լոյս տեսաւ, մենք չէինք վստահանում նրան սոցիալիստական Մանիֆէստ անուանելու։ 1847 թ. սոցիալիստ բառի տակ հասկանում էին երկու տեսակի մարդկանց։ Մի կողմից, զանազան ուտոպիական սիստէմների կողմնակիցներին և յատկապէս Անգլիական Օվէնիստներին ու Ֆրանսիական Ֆուրիէրիստներին, որոնք երկուսն էլ այն ժամանակ դարձել էին արդէն հասարակ աղանդներ եւ անհետանալու վրայ էին։ Միւս կողմից, ամեն տեսակ սոցիալական դեղագործներ, որոնք իրենց ամենաբոյժ միջոցներով և բազմատեսակ կարկատաններով կամենում էին դարմանել հասարակական թշուառութիւնները՝ առանց դիպչելու ամենեւին կապիտալին եւ շահին։ Երկու դեպքում էլ մարդիկ, որոնք կանգնած էին բանւորական շարժումից դուրս եւ որոնք նեցուկ էին որոնում աւելի «կրթուած» դասակարգերի մէջ։ Ընդհակառակը, բանւորների այն մասը, որը, համոզուած քաղաքական յեղաշրջումների անբաւարարութեան մէջ, պահանջում էր հասարակական կարգերի արմատական վերանորոգումն, անւանում էր իրեն կոմունիստական։ Դա դեռ բոլորովին անմշակ, ինքնաբինքով և փոքր ինչ բիրտ կոմունիզմ էր. բայց նա այնքան ուժեղ էր, որ կարողացաւ արտադրել ուտոպիական կոմունիզմի երկու մեծ սիստէմներ. Ֆըրանսիայում Կաբէի «իկարիական» կոմունիզմը, Գերմանիայում Վայտլինգի կոմունիզմը։ Սոցիալիզմը 1847 թւականին նշանակում էր բուժուական շարժում, իսկ

կօմունիզմը՝ բանուորական շարժում: Սօցիալիզմը, գոնէ Եւրոպայի ցամաքի վրայ, մուտք ունէր սալօններում, կօմունիզմը՝ ընդհակառակը: Եւ որովհետեւ մենք այն ժամանակ արդէն կատարելապէս համոզուած էինք, որ «բանուորների ազատագրութիւնը պէտք է լինի իրենց բանուորների գործը», ուստի մի վարկեան անգամ չէինք կարող տատանուել, թէ որը ընտրել այդ երկու անուններից: Եւ դրանից յետոյ էլ երբէք մեր մտքով չի անցնիլ հրաժարուել այդ անունից:

«Պրօլետարներ բոլոր երկիրների միացէք»: Շատ քիչ ձայներ արձագանք տուին մեզ, երբ մենք 42 տարի սրանից առաջ, Փարիզեան յեղափոխութեան նախօրեակին, որի ժամանակ պրօլետարիատը երեւան եկաւ ինքնուրոյն պահանջներով, աշխարհ նետեցինք այդ կոչը: Բայց 1864 թւականի Սեպտեմբերի 28-ին Արեւմտեան Եւրոպայի երկիրների մեծամասնութեան պրօլետարները միացան, կազմելով փայլուն յիշատակի «Միջազգային բանուորական Դաշնակցութիւն» ը: Այդ Դաշնակցութիւնը, ճիշտ է, գոյութիւն ունեցաւ միայն 9 տարի: Բայց որ նրա հիմնած բոլոր երկիրների պրօլետարների յաւիտենական միութիւնը ապրում է տակաւին, եւ աւելի ուժեղ քան երբ եւ իցէ, այդ ամենապերճախօս կերպով վկայում է այսօրուան օրը: Որովհետեւ այսօր, երբ ես գրում եմ այս տողերը, Եւրոպայի և Ամերիկայի պրօլետարիատը դիտում է իր առաջին անգամ ի մի խմբուած զօրագնդերը, ի մի խմբուած իբրեւ մի զօրք, մի դրօշակի տակ եւ մի մօտաւոր նպատակի համար—ութժամեայ նօրմալ, օրէնքով հաստատուած աշխատանքի օրուայ համար, որը պահանջեց առաջին անգամ 1866 թւականին Ինտերնացիօնալի Ժընեւի կօնգրէսը և կրկին 1889 թւակա-

*նին Փարիզի բանվորական կոնգրեսը։ Ու այսօրվա տեսարանը ցույց կտա բոլոր երկրների կապիտալիստներին և կալվածատերերին, որ բոլոր երկիրների պրոլետարները իրոք արդեն միացած են։*

*Երանի՛ թե Մարքսը դեռ կանգնած լիներ մոտըս, և սեփական աչքով տեսներ այդ բոլորը։*

*Ֆրիդրիխ Էնգելս*

*Լոնդոն 1 Մայիսի 1890*



# ՄԱՆԻՖԷՍՏ

## ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ

Եւրոպայում մի ուրուական է շրջում—կոմունիզմի ուրուականը։ Ալեւոր Եւրոպայի բոլոր զօրութիւնները՝ Պապը և Ցարը, Մէտէրնիխը եւ Գիզօն, Ֆրանսիական արմատականները եւ Գերմանական ոստիկանները սրբազան դաշն են կապել այդ ուրուականը հալածելու համար։

Կա՞յ արդեօք մի դիմադրական կուսակցութիւն, որ իր իշխող հակառակորդների կողմից կոմունիստական չ՚կոչուէր. կա՞յ մի դիմադրական կուսակցութիւն, որ իր կարգի չ՚մեղադրէր կոմունիզմի մէջ թէ աւելի առաջադէմ դիմադրականներին և թէ իր յետադէմ հակառակորդներին։

Այդ փաստը երկու տեսակ եզրակացութեան է բերում։

Կոմունիզմը ճանաչուած է արդէն իբրեւ ոյժ բոլոր Եւրոպական պետութիւնների կողմից։

Ժամանակն է արդէն, որ կոմունիստները ամբողջ աշխարհի առաջ բացարձակ կերպով հրապարակ հանեն իրենց հայեցողութիւնները, իրենց նպատակները եւ ձգտումները եւ կոմունիստական ուրուականի մասին տարածուած առասպելներին հակադրեն իր, կոմունիստական կուսակցութեան Մանիֆէստը։

Այդ նպատակով զանազան ազգութիւնների պատկանող կօմունիստները ժողովուել են Լօնդօնում եւ մշակել ներկայ Մանիֆէստը՝ Անգլիական, Ֆրանսիական, Գերմանական, Իտալական, Ֆլամանական և Դանիական լեզուներով հրատարակելու համար։



# I

# ԲՈՒՐԺՈՒԱՆԵՐ ԵՒ ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ

*Մինչայժմեան բոլոր հասարակութիւնների պատմութիւնը դ ա ս ա կ ա ր գ ա յ ի ն կռիւների պատմութիւն է։ դ)*

---

*դ) Այսինքն, ճիշտ ասած, դա գրաւոր կերպով մեզ հասած պատմութիւն է։ 1847 թուականին նախնական հասարակութեան պատմութիւնը—հասարակական կազմակերպութիւն, որ նախորդում է բոլոր գրաւոր պատմութիւններին—գրեթէ կատարելապէս անյայտ էր։ Դրանից յետոյ, Հաքստհաուզենի շնորհիւ, կատարուեց համայնական հողատիրութեան գիւտը Ռուսաստանում, իսկ Մաուրէրը ապացուցեց, որ հողատիրութեան այդ ձեւը կազմել է այն հասարակական հիմունքը, որից սկսել են իրենց պատմական զարգացումը բոլոր Գերմանական ցեղերը։ Կամաց—կամաց հաստատուեց նաեւ, որ գիւղական համայնքները իրենց համայնական հողատիրութեամբ կազմել են հասարակութեան սկզբնական ձեւը Հնդկաստանից մինչեւ Իրլանդիա։ Վերջապէս այդ նախնական կոմունիստական հասարակութեան ներքին յազմակերպութիւնը, իր տիպիկական ձեւով, պարզւեց այն ժամանակ, երբ Մորգանը գտաւ տոհմի* (gens) *իսկական բնութիւնը եւ նրա դիրքը ցեղի մէջ։ Նախնական համայնքի լուծման հետ, սկսւում է հասարակութեան բաժանումն տարբեր, իսկ յետոյ եւ հակադրական դասակարգերի։*

Ազատն ու ստրուկը, ազնուականն ու ռամիկը, կալուածատէրը և ճորտը, վարպետն ու քետրգեարը, մի խօսքով, ճնշողը եւ ճնշուածը կանգնած էին միմեանց դէմ մշտական հակառակութեան մէջ, մղում էին անընդհատ կռիւ մերթ թագուն, մերթ բացայայտ կռիւ, որ իւրաքանչիւր անգամ վերջանում էր կամ ամբողջ հասարակական կառուցուածքի յեղաշրջմամբ, կամ կռւող դասակարգի ընդհանուր կործանումով։

Նախընթաց պատմական շրջաններում մենք գտնում ենք գրեթէ ամենուրեք հասարակութեան լիակատար բաժանումն տարբեր աստիճանների եւ բազմատեսակ հասարակական դրութիւնների մի ամբողջ սանդուղք։ Հին Հռոմի մէջ մենք հանդիպում ենք ազնուականների, ասպետների, ռամիկների ըստրուկների։ Միջին դարերում երեւան են գալիս աւատներ, տեղապահներ, համքարական վարպետներ, քետրգեարներ եւ ճորտեր, եւ այդ դասակարգերից իւրաքանչիւրի մէջ դարձեալ առանձին ստորաբաժանումներ։

Աւատական հասարակութեան անկումից առաջացած ժամանակակից բուրժուական հասարակութիւնը չի վերացրել դասակարգային տարբերութիւնները։ Հների տեղ միայն նա դրել է նոր դասակարգեր, մըշակել հարստահարութեան նոր եղանակներ եւ կռւի նոր ձեւեր։

Մեր, բուրժուազիայի, դարաշրջանը նշանաւոր է սակայն նրանով, որ նա հասարակացրել է դասակարգային տարբերութիւնները։ Ամբողջ հասարակութիւնը բաժանւում է հետզհետէ երկու մեծ թշնամի բանակների, երկու մեծ, ուղղակի իրար դէմ կանգ-

նած դասակարգերի՝ բուրժուազիայի եւ պրօլետարիատի։

Միջնադարեան ճորտերից առաջ եկաւ առաջին քաղաքների ազգաբնակութիւնը։ Այդ ազգաբնակութիւնից զարգացան բուրժուազիայի առաջին տարրերը։

Ամերիկայի գիւտը և Աֆրիկայի շուրջնաւարկումը նոր ասպարէզ ստեղծեցին ծ ն ո ւ ն դ առնող բուրժուազիայի համար։ Արեւելեան Հնդկաստանի եւ Չինաստանի վաճառանոցները, Ամերիկայի գաղութացումը, փոխանակութիւնը գաղութների հետ, փոխանակութեան միջոցների և առհասարակ ապրանքների բազմացումը մինչեւ այդ չի լսուած զարկ տուին առեւտուրին, նաւարկութեանը եւ արդիւնաբերութեանը, եւ այդպիսով արագացրին քայքայւող աւատական հասարակութեան մէջ յեղափոխական տարրի աճումը։

Մինչ այդ գոյութիւն ունեցող աւատական կամ համքարական արդիւնաբերութեան եղանակը այլ եւս անկարող էր բաւարարութիւն տալ նոր վաճառանոցների աճող պէտքերին։ Նրա տեղ երեւան եկաւ մանուֆակտուրան։ Համքարական վարպետներին ետ մղեց արդիւնաբերական միջին դասակարգը․ աշխատանքի բաժանումն զանազան համքարութիւնների միջեւ չքացաւ, տեղի տալով աշխատանքի բաժանմանը արհեստանոցի մէջ։

Սակայն վաճառանոցները շարունակ աճում էին, պահանջը շարունակ ուժեղանում։ Մանուֆակտուրան նոյնպէս անբաւարար գտնւեցաւ։ Եւ շոգին ու մեքենայականութիւնը յեղափոխեցին արդիւնաբերութիւնը։ Մանուֆակտուրայի տեղը գրաւեց նորագոյն խոշոր արդիւնաբերութիւնը, միջին դասի տեղը—արդիւնաբերող միլիօնատէրը, ինդուստրիական բանակ-

ների առաջնորդները՝ արդի բուրժուաները:

Խոշոր արդիւնաբերութիւն ստեղծեց համաշխարհային վաճառանոց, որը նախապատրաստել էր Ամերիկայի գիւտով: Համաշխարհային վաճառանոցն անսահման զարկ տուաւ առեւտրին, նաւագնացութեանը և ցամաքային հաղորդակցութեան միջոցներին: Այդ նորից ազդեց արդիւնաբերութեան ծաւալման վրայ, եւ նոյն չափով, որ չափով աճում էին առեւտուրը, նաւագնացութիւնը եւ երկաթուղիները, աճում-զարգանում էր բուրժուազիան, բազմապատկում էր իր կապիտալները եւ ետ մղում Միջին դարերից մնացած բոլոր միւս դասակարգերը:

Այդպիսով մենք տեսնում ենք, որ ժամանակակից բուրժուազիան ոչ այլ ինչ է, բայց եթէ արդիւնք երկարատեւ զարգացման, արտադրութեան եւ հաղորդակցութեան ձեւերի մէջ եղած մի ամբողջ շարք յեղաշրջումների:

Բուրժուազիայի զարգացման ամեն մի աստիճանը ուղեկցւում էր նրա քաղաքական առաջդիմութեան համապատասխան քայլով:

Բուրժուազիան՝ ճնշուած ֆէօդալական տիրապետութեան տակ, զինուած եւ ինքնավար մի միութիւն կոմունայի ե մէջ, այստեղ անկախ քաղաքային հասարակապետութիւն, այնտեղ միապետութեան մէջ երրորդ հարկատու դաս, ապա մանուֆակտուրայի շրջանում՝ սահմանափակ կամ միահեծան պե-

---

ե) Այդպէս էին կոչւում Իտալիայի և Ֆրանսիայի քաղաքացիների քաղաքային համայնքները, այն օրից, երբ նրանք իրենց ֆէօդալ իշխաններից գնել կամ խլել էին ինքնավարութեան իրաւունքը:

տութեան մէջ՝ հակակշիռ ընդէմ ազնուականութեան․ գլխաւոր պատուարը բոլոր խոշոր միապետութիւնների առհասարակ,– այդ բուրժուազիան, խոշոր արդիւնաբերութեան եւ համաշխարհային վաճառանոցի ծագման օրից, նուաճեց իր համար նորագոյն սահմանադրական պետութեան մէջ բացառիկ քաղաքական իշխանութիւն։ Արդի պետական իշխանութիւնը ոչ այլ ինչ է, բայց եթէ մի յանձնաժողով, որը կոչուած է բուրժուազիայի հասարակական գործը վարելու։

Բուրժուազիան խաղացել է պատմութեան մէջ մի վերին աստիճան յեղափոխական դեր։

Ամէն տեղ, ուր բուրժուազիան տիրապետութիւն է ձեռք բերել, նա քանդել է բոլոր աւատական, նահապետական, հովուերգական յարաբերութիւնները։ Նա անգթօրէն խորտակել է աւատական պէս-պէս կապերը, որոնք միացնում էին մարդուն իր հրամանատարների հետ, եւ չի թողել մարդկանց մէջ այլ կապ, բացի մերկ շահից, բացի անսիրտ «նաղդ վճարից»։ Բարեպաշտ յափշտակութեան ասպետական ոգեւորութեան եւ մանր-բուրժուական սենտիմենտալիզմի բռնկումները նա խեղդել է նեղ, մանրահաշիւ եսամոլութեան սառն ջրի մէջ։ Մարդկային անհատական արժանաւորութիւնները նա վերածել է փոխանակութեան արժէքի, եւ ձեռք բերած կամ երաշխաւորեալ ազատութեան բազմաթիւ տեսակների տեղ նա դրել է առեւտրի անհոգի ազատութիւնը։ Մի խօսքով, փոխարէն կրօնական եւ քաղաքական պատրանքներով քօղարկուած շահագործութեան, նա հաստատել է բացարձակ, ուղղակի, չոր եւ անամօթ շահագործութիւն։

Բուրժուազիան զրկել է սրբազան հմայքից

գործունէութեան այն բոլոր տեսակները, որոնց վրայ մինչեւ օրս նայում էին բարեպաշտ երկիւղածութեամբ: Բժիշկ, իրաւաբան, քահանայ, բանաստեղծ, գիտնական-բոլորին նա դարձրել է վարձու բանւորներ:

Բուրժուազիան պատռել է ընտանեկան յարաբերութիւններից քնքուշ-սենտիմենտալ քօղը, դարձնելով նրանց սոսկ փողային հաշիւների գործ:

Բուրժուազիան մերկացրել է այն ծոյլ անշարժութիւնը, որը կազմում էր մի բնական լրացումն ոյժի կոպիտ միջնադարեան արտայայտութեան և որը մինչեւ օրս հիացնում է յետադիմականներին: Նա էր առաջինը, որ ցոյց տուեց, թէ ինչ արդիւնքներ կարող է ստեղծել մարդկային գործունէութիւնը: Նրա արած հրաշագործութիւնները բոլորովին այլ են, քան Եգիպտական աշտարակները, Հռոմէական ջրանցքերը եւ Գոթական մայր-տաճարները. Նրա նուաճումները նման չեն բոլորովին ազգերի գաղթականութիւններին եւ Խաչակիր Արշաւանքներին:

Բուրժուազիան չի կարող գոյութիւն ունենալ, առանց անդադար յեղափոխելու արդիւնագործութեան միջոցները, ուրեմն եւ արդիւնագործական յարաբերութիւնները, ուրեմն և բովանդակ հասարակական յարաբերութիւնները: Ընդհակառակը, արդիւնագործութեան հին եղանակների անփոփոխ պահպանումն առաջին պայմանն էր նախկին արդիւնաբերական դասակարգերի գոյութեան համար: Արդիւնագործութեան անընդհատ յեղաշրջումը, հասարակական յարաբերութիւնների մշտական սասանումը, յաւիտենական անապահովութիւն եւ շարժում, ահա բուրժուական դարաշրջանի յատկանիշները, որոնցով նա տարբերւում է միւս դարաշրջաններից: Բոլոր ա-

անհրաժեշտ են հեռաւոր երկրների և ամենատարբեր կլիմաների արդիւնքներ։ Նախկին տեղական կամ ազգային ինքնաբաւականութեան սահմանափակութեան տեղ ծնունդ առաւ բազմակողմանի փոխանակութիւն եւ ազգերի փոխադարձ կախումն իրարից։ Եւ այդ ոչ միայն նիւթական, այլ և մտաւոր գործունէութեան արգասիքների վերաբերեալ։ Առանձին ազգերի մտաւոր արդիւնքները դառնում են ընդհանուր բարիք։ Ազգային միակողմանիութիւնը եւ սահմանափակութիւնը աւելի ու աւելի են անհնարին դառնում, և բազմաթիւ ազգային և տեղական գրականութիւններից կազմւում է մի համաշխարհային գրականութիւն։

Շնորհիւ արդիւնագործութեան միջոցների արագընթաց կատարելագործման և անսահման դիւրաւոր դարձած հաղորդակցութեան, բուրժուազիան մղում է բոլոր—նոյնպէս և ամենաբարբարոս—ազգերին դէպի քաղաքակրթութիւն։ Ապրանքների էժան գները ներկայանում են նրա ձեռքում այն ծանր հրատափը, որի միջոցով նա խորտակում է բոլոր Չինական պարիսպները, որի օգնութեամբ նա ստիպում է անձնատուր լինել իրեն բարբարոսների դէպի օտարներն ունեցած ամենայամառ ատելութիւնը։ Նա ստիպում է բոլոր ազգութիւններին ընդունել բուրժուական արդիւնագործութեան եղանակը, սպառնալով նրանց հակառակ դէպքում ոչնչացումով։ Նա ստիպում է նրան, մտցնել իրենց մէջ քաղաքակրթութիւն ըւածը, այսինքն դառնալ բուրժուա։ Մի խօսքով, նա ստեղծում է մի աշխարհ իր սեփական պատկերի նման։

Բուրժուազիան հպատակացրել է գիւղը քաղա-

քին: Նա գոյութեան է կանչել ահագին քաղաքներ, վերին աստիճանի բազմացրել է քաղաքային ազգաբնակութիւնը ի վնաս գիւղականի և այդպէսով ազատել է ազգաբնակութեան մի մասը գիւղի բթացուցիչ մթնոլորտից: Եւ ինչպէս գիւղը քաղաքից, նոյնպէս էլ բարբարոս և կիսաբարբարոս երկիրները նա կախման մէջ է դրել քաղաքակիրթ երկիրներից, գիւղացիական ժողովուրդները՝ բուրժուական ժողովուրդներից, Արևելքը՝ Արևմուտքից:

Բուրժուազիան հետզհետէ վերջ է դնում արդիւնագործութեան միջոցների, կայքի և ազգաբնակութեան ցիրուցանութեանը: Նա առաջ է բերել ազգաբնակութեան կուտակումներ, կենտրոնացրել է արդիւնագործութեան միջոցները, ամփոփել է մի քանի ձեռքերում սեփականութիւնը: Դրա անհրաժեշտ հետևանքն էր քաղաքական կենտրոնացումն: Անկախ, հազիւ իրար հետ կապուած նահանգներ, տարբեր շահերով, օրէնքներով, կառավարութիւններով և մաքսերով ի մի շաղկապուեցին, կազմելով մի ազգ մի կառավարութիւն, մի օրէնք, մի ազգային դասակարգային ինտերես, մի մաքսային սահմանագիծ:

Իր հազիւ հարիւր տարեայ դասակարգային տիրապետութեան ժամանակ բուրժուազիան ստեղծել է աւելի բազմաթիւ և աւելի հսկայական արդիւնագործութեան ույժեր, քան բոլոր նախորդ սերունդները միասին: Բնութեան ույժերի նուաճումը, մեքենաները, քիմիայի գործադրութիւնը երկրագործութեան և արդիւնագործութեան մէջ, շոգենաւարկութիւնը, երկաթուղիները, ելեքտրական հեռագրագծերը, բովանդակ աշխարհամասերի շահագործութիւնը, գետերի յարմարեցումն նաւարկութեան համար, կարծես

հողից յանկարծ բուսած ամբողջ ազգաբնակութիւն-ներ... ո՞ր արդեօք նախընթաց դարերից կարող էր գուշակել, որ այնչափ արդիւնաբերող ուժեր անշարժ ննջում են հասարակական աշխատանքի ծոցում:

Այսպիսով մենք տեսանք, որ արդիւնագործու-թեան և հաղորդակցութեան միջոցները, որոնց վրայ բուրժուազիան հիմնել է իր զօրութիւնը, սկիզբ են առել դեռ աւատական հասարակութեան մէջ: Ար-դիւնագործութեան և հաղորդակցութեան այդ մի-ջոցների զարգացման մի որոշ աստիճանի վրայ, այն պայմանները, որոնց մէջ արդիւնաբերում եւ փոխա-նակում էր աւատական հասարակութիւնը, երկրա-գործութեան և մանուֆակտուրային արդիւնագոր-ծութեան աւատական կազմակերպութիւնը, մի խօս-քով, աւատական սեփականատիրական յարաբերու-թիւնները այլեւս անհամապատասխան էին դարձել արդէն զարգացած արդիւնաբերող ուժերի հետ: Փոխարէն նպաստելու՝ այդ յարաբերութիւնները ճն-շում էին արդիւնագործութիւնը: Նրանք դարձել էին նրա կաշկանդիչ շղթաները: Նրանք պէտք է խորտակուէին—և նրանք խորտակուեցին:

Նրանց տեղ ասպարէզ եկաւ ազատ մրցութիւ-նը իրեն համապատասխան հասարակական և քաղա-քական կազմով, բուրժուա դասակարգի տնտեսական եւ քաղաքական տիրապետութեամբ:— Մեր աչքի առաջ կատարուում է նոյնօրինակ մի շարժում:

Բուրժուական արդիւնագործութեան ու փոխա-նակութեան յարաբերութիւնները. բուրժուական սե-փականատիրութեան յարաբերութիւնները, արդի բուրժուական հասարակութիւնը, որը հրաշագործու-թեամբ առաջ է բերել արդիւնագործութեան և հա-

ղորդակցութեան այդպիսի վիթխարի միջոցներ. Նման է այն կախարդին, որը անզօր է այլ եւս տիրանա-լու ստորերկրեայ ոգիներին, որոնց նա ինքն երբեմն դուրս է կանչել: Վերջին տասնամեակների ընթաց-քում, առեւտրի եւ արդիւնաբերութեան պատմու-թիւնը արդի արդիւնաբերող ուժերի ըմբոստացման պատմութիւնն է՝ ընդդէմ արդիւնաբերութեան արդի կազմակերպութեան, ընդդէմ սեփականատիրական յարաբերութիւնների, որոնք կազմում են բուրժուա-զիայի գոյութեան եւ տիրապետութեան կենսական պայմանը: Բաւական է անուանել առեւտրական ճգ-նաժամերը, որոնց պարբերական կրկնութիւնը աւելի ու աւելի է սպառնական դառնում ամբողջ բուրժու-ական հասարակութեան գոյութեան համար: Այդ առեւտրական ճգնաժամերի միջոցին կանոնաւորապէս ոչնչացւում է ոչ միայն պատրաստած ապրանքների մի մասը, այլ եւ կանխաւ ձեռք բերուած արդիւնա-գործական ուժերը: Ճգնաժամերի ժամանակ երեւան է գալիս մի հասարակական համաճարակ, որը բոլոր նախկին շրջանների համար անհեթեթութիւն կը թուէր — գերարտադրութեան համաճարակը: Հասարակու-թիւնը յանկարծ ընկնում է ժամանակաւոր բարբա-րոսական վիճակի մէջ. Թւում է, որ սովը կամ մի ընդհանուր աւերիչ պատերազմ զրկել են հասարա-կութիւնը կենսական բոլոր միջոցներից. արդիւնաբե-րութիւնը եւ առեւտուրը թւում են բոլորովին ոչն-չացուած, եւ ինչու: Որովհետեւ հասարակութիւնը չափից դուրս քաղաքակրթուած է, որովհետեւ նա չա-փից դուրս կենսական միջոցներ ունի, որովհետեւ նրա առեւտուրն ու արդիւնաբերութիւնը չափից դուրս զարգացած են: Բուրժուազիայի տրամադրութեան

տակ գանուող արդիւնագործական ուժերը այլ եւս չի պաստում բուրժուական սեփականատիրական յարաբերութիւնների պահպանմանը. ընդհակառակը, նրանք չափազանց աճել են այդ յարաբերութիւնների համար և նրանց մէջ խոչընդոտի են հանդիպում. եւ հէնց որ նրանց յաջողւում է յաղթահարել այդ խոչընդոտը, նրանք քարուքանդ են անում ամբողջ բուրժուական հասարակութիւնը եւ սպառնում բուրժուական սեփականութեան գոյութեանը։ Բուրժուական յարաբերութիւնները չափազանց անձուկ են դարձել իրենց ստեղծած հարստութիւնները պարունակելու համար։ —Ի՞նչպէս է արդեօք բուրժուազիան դիմադրում ճգնաժամերին։ Մի կողմից, ոչնչացմամբ, միւս կողմից, նոր վաճառանոցների նուաճումով և հների աւելի հիմնաւոր շահագործութեամբ։ Ի՞նչպէս ուրեմն։ Նախապատրաստելով աւելի լայն և վիթխարի ճգնաժամեր և պակասեցնելով նրանց առաջըն առնելու միջոցները։

Այն զէնքերը, որոնցով բուրժուազիան տապալեց աւատականութիւնը, այժմ դառնում են իրեն, բուրժուազիայի դէմ։

Բայց բուրժուազիան ոչ միայն կռել է այն զէնքերը, որոնք նրան մահացու հարուած են հասցնելու, նա ծնունդ է տուել և այն մարդկանց, որոնք պէտք է գործադրեն այդ զէնքերը—ժամանակակից բանուորներին, պրոլետարներին։

Որչափ զարգանում է բուրժուազիան, այսինքն կապիտալը, նոյնչափ էլ զարգանում է պրոլետարիատը—մի դասակարգ ժամանակակից բանուորների, որոնք ապրում են քանի դեռ աշխատանք են գտնում, և աշխատանք են գտնում, քանի դեռ իրենց այլ

աշխատանքը աճեցնում է կապիտալը: Այդ բանւորները, որոնք հարկադրւած են հատիկ-հատիկ ծախել իրենց, ոչ այլ ինչ են, բայց եթէ մի ապրանք, ինչպէս և ուրիշ շատ վաճառանիւթեր, ուստի և ենթարկւած են մրցութեան բոլոր փոփոխութիւններին, վաճառանոցի բոլոր տատանումներին:

Այդ բանւորների աշխատանքը, շնորհիւ մեքենաների գործածութեան ընդարձակման և աշխատանքի բաժանման կորցրել է ինքնուրոյն բնաւորութիւնը, ապա եւ գրաւչութիւնը աշխատաւորի համար: Աշխատաւորը դարձել է մեքենայի մի մասնիկը, որից պահանջւում են միայն ամենահասարակ, միօրինակ և դիւրաւ սովորելի շարժումներ: Ձեռնարկողի ծախքերը բանւորական ոյժ գնելու համար սահմանափակւում են գրեթէ միայն այն կենսական միջոցներով, որոնք անհրաժեշտ են բանւորի ապրուստի եւ նրա ցեղի շարունակութեան համար: Իսկ որեւէ ապրանքի—ուրեմն եւ աշխատանքի գինը հաւասար է նրա արտադրութեան ծախքերին: Ուստի, քանի աւելի է աշխատանքը կորցնում իր գրաւչութիւնը, այնքան աւելի է ընկնում աշխատավարձը: Առաւել եւս: Քանի աւելի են աճում մեքենաների գործածութիւնը եւ աշխատանքի բաժանումը, այնքան աւելի է աճում բանւորի աշխատանքի քանակութիւնը—լինի դա աշխատանքի ժամերի երկարացման կամ որոշ ժամանակամիջոցում պահանջելիք աշխատանքի աւելացման միջոցով, լինի դա մեքենաների շարժընթացքի արագացմամբ կամ այլ կերպ:

Ժամանակակից արդիւնաբերութիւնը վերածել է նահապետական վարպետի փոքրիկ արհեստանոցն առեւտրական կապիտալիստի հսկայական գործարանի:

Գործարաններում խմբուած բանւորական մասսաները կազմակերպւում են որպէս զինւորներ։ Նրանք դրուած են սպաների եւ ենթասպաների ամբողջ մի հիերարխիայի հսկողութեան ներքոյ, որպէս արդիւնաբերութեան բանակի զինւորներ։ Նրանք ոչ միայն բուրժուա դասակարգի, բուրժուական պետութեան ըստրուկներն են, այլ եւ ստրկացւում են ամեն օր, ամեն ժամ մեքենայի, վերակացուի եւ նամանաւանդ բուրժուա ձեռնարկողի կողմից։ Եւ այդ բռնակալութիւնը այնքան աւելի գձուձ, ատելի եւ դառնալից է, որքան աւելի բացարձակօրէն նա յայտարարում է շահը, իբրեւ իր միակ նպատակը։

Որքան աւելի է քչանում ձեռագործի մէջ ճարպկութեան եւ ոյժի պահանջը, այսինքն որքան աւելի է զարգանում ժամանակակից արդիւնաբերութիւնը, այնքան աւելի է տղամարդկանց աշխատանքը դուրս մղւում կանանց աշխատանքով։ Բանւոր դասակարգի վերաբերեալ, սեռի եւ տարիքի տարբերութիւնները հասարակական ոչ մի նշանակութիւն չունեն այլ եւս։ Ձեռնարկողը տեսնում է իր առջեւ միայն աշխատանքի գործիքներ, որոնց գինը փոփոխւում է համապատասխան տարիքի եւ սեռի։

Երբ գործարանատէրերը ծծում են բանւորներից ինչ որ կարելի է, երբ վերջիններս ստանում են դրամով իրենց աշխատավարձը, նրանց վրայ թափւում են իսկոյն բուրժուազիայի միւս մասերը տանուտէրերը, խանութպանները, վաշխառուները եւայլն։

Միջին դասի ցածր խաւերը՝ մանր արդիւնաբերողները, վաճառականները եւ ռանտիէրները, արհեստաւորները եւ գիւղացիք,—բոլոր այդ խաւերն էլ անցնում են պրոլետարիատի շարքերը, մասամբ

այն պատճառով, որ նրանց փոքր կապիտալը անբաւական է խոշոր արդիւնաբերութեան համար եւ չի դիմանում խոշոր կապիտալիստների մրցումին, մասամբ էլ այն պատճառով, որ նրանց արդիւնաբերական տեխնիկական եղանակները կորցնում են իրենց արժէքը նոր եղանակների առաջ: Այսպէս, պրօլետարիատը գոյանում է ազգաբնակութեան բոլոր դասակարգերից:

Պրօլետարիատն անցնում է զարգացման զանազան աստիճաններ: Նրա կռիւը բուրժուազիայի դէմ սկսւում է նրա գոյութեան օրից:

Սկզբում կռւում են հատիկ-հատիկ բանւորներ, յետոյ մի որեւէ գործարանի բանւորներ, ապա արդիւնաբերութեան մի որեւէ ճիւղի բանւորներ մի տեղում՝ իրենց անմիջապէս հարստահարող բուրժուաների դէմ: Նրանք ուղղում են իրենց հարուածները ոչ միայն բուրժուական արդիւնաբերութեան պայմանների, այլ եւ արդիւնաբերութեան գործիքների դէմ. նրանք ոչնչացնում են օտարերկրեայ ապրանքները, որոնց մրցումը զրկում է նրանց աշխատանքից, նրանք փշրում են մեքենաները, հրդեհում գործարանները, ձգտելով վերահաստատել միջնադարեան աշխատաւորի ընկած դրութիւնը:

Այդ աստիճանի վրայ բանւորները կազմում են մի մասսա, ցրւած երկրի ամբողջ տարածութեան վրայ եւ մրցման շնորհիւ բաժանւած իրարից. բանւորների մասսայական շարժումները ոչ թէ նրանց համերաշխութեան, այլ բուրժուազիայի միութեան հետեւանքն են, բուրժուազիայի, որն իր քաղաքական նպատակներին հասնելու համար պէտք է եւ դեռ կարող է շարժման մէջ դնել պրօլետարիատը: Ուրեմն այդ աստիճանի վրայ պրօլետարները կռւում են ոչ

թէ իրենց թշնամիների, այլ իրենց թշնամիների թըշնամիների դէմ, այսինքն ինքնակալ միապետութեան մնացորդների, հողային սեփականատէրերի, ոչ-ինդուստրիական բուրժուազիայի և մանր բուրժուազիայի դէմ։ Այդպիսով ամբողջ պատմական շարժումը կենտրոնացած է բուրժուազիայի ձեռքում․ իւրաքանչիւր այդ ճամբով տարած յաղթութիւն՝ բուրժուազիայի յաղթութիւնն է։

Բայց արդիւնաբերութեան զարգացման հետ աճում է ոչ միայն պրոլետարիատի քանակը, այլ եւ նա համախմբւում է մեծ մասսաներով, աճում է նրա ույժը և նա զգում է այդ։ Պրոլետարների ինտերեսների և նրանց կենսական դրութիւնների միջեւ եղած տարբերութիւնները աւելի և աւելի են չըքանում, մինչդեռ մեքենայականութիւնը աւելի ու աւելի է հարթում աշխատանքի մէջ եղած տարբերութիւնները եւ իջեցնում աշխատավարձը գրեթէ ամենուրեք մինչեւ միեւնոյն ցածր աստիճանը։ Բուրժուաների միջեւ աճող մրցումը և դրանից բղխող առեւտրական ճգնաժամերը աւելի փոփոխական են դարձընում բանւորների աշխատավարձը․ մեքենայականութիւնը իր արագ զարգացմամբ եւ անընդհատ կատարելագործութեամբ օրըստորէ աւելի և աւելի է անապահով դարձնում նրանց կացութիւնը․ առանձին բանւորների եւ բուրժուաների միջեւ եղող ընդհարումները աւելի եւ աւելի են ընդունում երկու դասակարգերի ընդհարումների բնաւորութիւն։ Բանւորները սկսում են միութիւններ կազմել բուրժուաների դէմ, նրանք պաշտպանում են միացած ույժերով իրենց աշխատավարձը։ Նրանք մինչեւ անգամ կազմում են յարատեւ միութիւններ, որպէսզի հաւանա-

կան խլրտումների ժամանակ կարողանան ապահոված լինել իրենց դրութիւնը: Տեղ-տեղ կռիւն անցնում է ապստամբութեան:

Երբեմն-երբեմն բանուորները յաղթում են, բայց միայն ժամանակաւորապէս: Նրանց կռուի իսկական հետեւանքը ոչ թէ անմիջական յաղթութիւնն է, այլ բանուորների աւելի լայն մասսաների միախմբումը: Դրան նպաստում են հաղորդակցութեան զարգացող միջոցները, որոնց ստեղծում է խոշոր արդիւնաբերութիւնը եւ որոնք փոխադարձ կապեր են ստեղծում զանազան տեղերի բանուորների մէջ: Բաւական են միայն այդ կապերը, որպէսզի միեւնոյն բնաւորութիւն կրող բոլոր տեղական կռիւները կենտրոնանան կազմեն մի ազգային, մի դասակարգային կռիւ, իսկ իւրաքանչիւր դասակարգային կռիւ քաղաքական կռիւ է: Եւ այդ միութիւնը, որի համար միջնադարեան քաղաքացուն հարկաւոր էին, այն ժամանակուայ նեղ ճանապարհներով, հարիւրաւոր տարիներ, ժամանակակից բանուորներն իրագործում են երկաթուղու միջոցով քիչ տարիների ընթացքում:

Պրօլետարների այդ կազմակերպումն իբրև դասակարգ, հետեւաբար և իբրև քաղաքական կուսակցութիւն, խախտւում է ամեն րոպէ, շնորհիւ բանուորների մէջ տիրող մրցման: Բայց նա միշտ նորից վերականգնում է, աւելի ուժեղ, աւելի ամուր եւ աւելի հզօր: Օգտւելով բուրժուազիայի մէջ գոյութիւն ունեցող ներքին երկպառակութիւններից, նա ստիպում է պաշտպանել օրէնքի միջոցով բանուորների մի քանի առանձին շահերը: Այդպէս, 10-ժամեայ աշխատանքի բիլլը Անգլիայում:

Հին հասարակութեան ծոցում կատարւող ներ-

քին ընդհարումներն առհասարակ ուժեղ կերպով նը-պաստում են պրոլետարիատի զարգացմանը: Բուր-ժուազիան շարունակ կռւի մէջ է. սկզբում ազնուա-կանութեան դէմ, յետոյ բուրժուազիայի այն մասե-րի դէմ, որոնց շահերը հակառակ են խոշոր արդիւ-նաբերութեան զարգացմանը, և միշտ օտար երկրնե-րի բուրժուազիայի դէմ: Բոլոր այդ կռիւների ժա-մանակ նա ստիպւած է դիմել պրոլետարիատին, օգտը-ւել նրա աջակցութեամբ և մղել նրան այդպիսով դէ-պի քաղաքական շարժումն: Ուրեմն, բուրժուազիան ինքն մատակարարում է պրոլետարիատին սեփական քաղաքական դաստիարակութեան էլեմենտները, այ-սինքն իր դէմ ուղղուելիք զէնքերը:

Յետոյ, ինչպէս մենք տեսանք, ինդուստրիայի զարգացման շնորհիւ, տիրող դասակարգի ամբողջ բաղկացուցիչ մասերը դառնում են պրոլետարիատ կամ առնուազն վտանգւում են իրենց կենսական պայ-մաններում մէջ: Դրանք եւս ոչ պակաս դաստիարակիչ էլեմենտներ են մատակարարում պրոլետարիատին:

Վերջապէս այն ժամանակ, երբ դասակարգային կռիւը մօտենում է իր վերջնական լուծմանը, տիրող դասակարգի, ամբողջ հին հասարակութեան քայքայ-ման ներքին պրոցէսը ստանում է այնպիսի ուժեղ եւ սուր կերպարանք, որ տիրող դասակարգի մի փոքրիկ մասը բաժանւում է առաջինից եւ միանում յեղափո-խական դասակարգին, որին պատկանում է ապագան: Ինչպէս որ մի ժամանակ ազնւականութեան մի մասն անցաւ բուրժուազիայի կողմը, այնպէս էլ այժմ բուր-ժուազիայի մի մասն անցնում է պրոլետարիատի կող-մը. դա բուրժուա իտէօլօգների այն մասն է, որը տեսականապէս ըմբռնել է ամբողջ պատմական շար-

ժումը:

Բոլոր դասակարգերից, որոնք կանգնած են այսօր բուրժուազիայի դէմ, միայն պրոլետարիատն է իսկական յեղափոխական դասակարգ: Մնացած դասակարգերը ընկնում և կորչում են խոշոր արդիւնաբերութեան զարգացմամբ, մինչդեռ պրոլետարիատը նրա հարազատ արդիւնքն է:

Միջին դասակարգերը՝ մանր արդիւնաբերողը, մանր վաճառականը, արհեստաւորը, գիւղացին, նրանք բոլորն էլ կռւում են բուրժուազիայի դէմ, որպէսզի ապահովեն անկումի առաջ իրենց գոյութիւնը, իբրեւ միջին դասակարգերի: Ուրեմն նրանք յեղափոխական չեն, այլ պահպանողական: Աւելին: Նրանք յետադիմական են, որովհետեւ ձգտում են ետ դարձնել պատմութեան անիւը: Իսկ եթէ յեղափոխական են, դա միայն այն մտքով, որ նրանց վիճակւած է պրոլետարիատ դառնալ, դա միայն այն չափով, որ չափով նրանք պաշտպանում են ոչ թէ իրենց ներկայ, այլ ապագայ շահերը, որ չափով նրանք թողնում են իրենց սեփական տեսակէտը, որպէսզի կանգնեն պրոլետարիատի տեսակէտի վրայ:

Մուրացկան պրոլետարիատը—հին հասարակութեան ամենաստորին խաւերի այդ պասիւ կերպով ծուլութեան մատնւած արդիւնքը տեղ-տեղ քաշւում է պրոլետարական յեղափոխութեամբ շարժման մէջ. սակայն իր ամբողջ կացութեան համաձայն նա աւելի պատրաստ է ծախել իրեն յետադէմ դաւերի համար:

Պրոլետարիատի կացութեան պայմանների մէջ արդէն ոչնչացւած են, գոյութիւն չունեն այլեւս հին հասարակութեան գոյութեան պայմանները: Պրոլետարը զուրկ է սեփականութիւնից. նրա յարաբե-

րութիւնը դէպի եւ երեխաները ամենեւին չի նման բուրժուական ընտանեկան յարաբերութիւններին. ժամանակակից ինդուստրիական աշխարհը, ժամանակակից ստրկութիւնը կապիտալի առաջ, որը նոյնն է Անգլիայում, ինչ որ և Ֆրանսիայում, Ամերիկայում, ինչ որ և Գերմանիայում, խլել է նրանից ամեն ազգային առանձնայատկութիւն: Օրէնքները, բարոյականութիւնը, ոչ այլ ինչ են նրա համար, բայց եթէ մի շարք բուրժուական նախապաշարմունքներ, որոնց տակ թագնուած են նոյնքան բուրժուական շահեր:

Ձեռք բերելով տիրապետութիւն, բոլոր նախկին դասակարգերը ձգտում էին ապահովել իրենց նուաճած դիրքը կեանքում, ենթարկելով ամբողջ հասարակութիւնը այդ նուաճման պայմաններին: Պրոլետարները կարող են գրաւել արդիւնաբերող հասարակական ուժերը միայն այն ժամանակ, երբ նրանք կ'ոչնչացնեն իւրացման սեփական եղանակը, իսկ դրա հետ միասին եւ մինչեւ այժմ գոյութիւն ունեցող իւրացման բոլոր եղանակները: Սեփական ոչինչ պրոլետարները չունեն ապահովելու. նրանք խորտակելու են բոլոր մինչայժմեան մասնաւոր ապահովութիւնները եւ մասնաւոր արտօնութիւնները:

Մինչայժմեան բոլոր շարժումները եղել են փոքրամասնութեան շարժումներ կամ թէ կատարուել են յօգուտ փոքրամասնութեան: Պրոլետարական շարժումը ահագին մեծամասնութեան ինքնուրոյն շարժումն է, յօգուտ ահագին մեծամասնութեան: Պրոլետարիատը, ներկայ հասարակութեան ամենաստորին խաւը, չի կարող բարձրանալ, ուղղուել, առանց օդը ցնդելու ամբողջ վերնաշէնքը, որ կազմում է ներկայ պաշտօնական հասարակութիւնը:

Պրոլետարիատի կռիւը բուրժուազիայի դէմ, եթէ ոչ իր էութեամբ, գոնէ իր ձեւով նախ և առաջ ազգային կռիւ է։ Իւրաքանչիւր երկրի պրոլետարիատ պէտք է բնականաբար նախ հաշիւ տեսնէ իր սեփական բուրժուազիայի հետ։

Ներկայացնելով պրոլետարիատի զարգացման ամենաընդհանուր աստիճանները, մենք հետեւեցինք ներկայ հասարակութեան մէջ գոյութիւն ունեցող շատ թէ քիչ թագուն քաղաքացիական կռւին մինչեւ այն կէտը, երբ նա փոխւում է բացարձակ յեղափոխութեան, և պրոլետարիատը, բուրժուազիայի բռնի տապալման միջոցով, հաստատում է իր տիրապետութիւնը։

Ինչպէս մենք տեսանք, մինչայժմեան բոլոր հասարակութիւնները հիմնւած էին ճնշող եւ ճնշւած դասակարգերի ներհակութեան վրայ։ Բայց որեւէ դասակարգ ճնշելու համար, պէտք է ապահովել նըրան գոյութեան այնպիսի պայմաններ, որոնց մէջ նա կարողանայ գէթ քարշ տալ իր ստրկական գոյութիւնը։ Ճորտատիրութեան շրջանում ճորտը կարողացաւ բարձրանալ մինչեւ համայնքի անդամի աստիճանը, ինչպէս որ աւատական միապետութեան լծի տակ մանր քաղաքացին կարողացաւ դառնալ բուրժուա։ Ժամանակակից աշխատաւորը, ընդհակառակը, փոխանակ բարձրանալու արդիւնաբերութեան առաջդիմութեան հետ, ընկնում է աւելի, քան իր դասակարգի գոյութեան պայմանները։ Աշխատաւորը դառնում է մուրացկան, իսկ մուրացկանութիւնը զարգանում է աւելի արագ, քան ազգաբնակութիւնը եւ հարստութիւնը։ Ակներեւ է արդէն, որ բուրժուազիան անընդունակ է այլ եւս երկար ժամանակ հաստա-

րակութեան տիրող դասակարգը մնալու եւ իր դասակարգի գոյութիւնը կարգաւորող օրէնքը դարձնելու։ Նա անընդունակ է իշխելու, որովհետեւ նա անընդունակ է ապահովելու իր ստրուկների գոյութիւնը, նոյնիսկ ստրկութեան սահմաններում, որովհետև նա ստիպուած է իր ստրկին այնպիսի դրութեան հասցընելու, երբ ինքը պէտք է կերակրէ նրան, փոխարէն նրանից կերակրուելու։ Հասարակութիւնը չի կարող այլ եւս ապրել նրա տիրապետութեան տակ, որովհետեւ նրա կեանքն անհաշտելի է դարձել հասարակութեան հետ։

Բուրժուա դասակարգի գոյութեան և տիրապետութկան համար, հարստութիւնների կուտակումը մասնաւոր անհատների ձեռքում, կապիտալի գոյացումը և աճումը էական պայմաններ են. իսկ կապիտալի գոյութեան նախապայմանը վարձու աշխատանքն է։ Վարձու աշխատանքն յենւում է բացառապէս բանւորների փոխադարձ մրցման վրայ։ Արդիւնաբերութեան զարգացումը, որի անկամ և անդիմադիր կըրողը բուրժուազիան է, փոխարէն առանձնացնելու բանւորներին մրցման միջոցով, առաջ է բերում նըրանց մէջ ընկերակցութեան միջոցով յեղափոխական միութիւն։ Այդպիսով, խոշոր արդիւնաբերութեան զարգացմամբ, բուրժուազիայի ոտների տակից հեռանում է այն հողը, որի վրայ նա արտադրում է եւ իւրացնում արդիւնքները։ Նա արտադրում է նախ և առաջ իր սեփական գերեզմանափորներին։ Նրա անկումը և պրոլետարիատի յաղթութիւնը հաւասարապէս անխուսափելի են։

# II

## ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԵՒ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐ

Ի՞նչպէս են վերաբերւում կոմունիստները պրոլետարներին առհասարակ։

Կոմունիստները չեն կազմում առանձին կուսակցութիւն ուրիշ բանւորական կուսակցութիւնների հանդէպ։

Նրանք չունեն ամբողջ պրոլետարիատի շահերից տարբերւող շահեր։

Նրանք չեն առաջարկում առանձին սկզբունքներ, որոնց համաձայն կը ցանկանային ձեւել պրոլետարական շարժումը։

Կոմունիստները տարբերւում են միւս պրոլետարական կուսակցութիւններից միայն նրանով, որ մի կողմից, զանազան ազգային պրոլետարական կռիւների մէջ նրանք շեշտում և պաշտպանում են համայն պրոլետարիատի ընդհանուր, ազգութիւնից անկախ շահերը, միւս կողմից, նրանով, որ պրոլետարիատի և բուրժուազիայի կռւի զարգացման աստիճանների վրայ նրանք պաշտպանում են միշտ ամբողջ շարժման շահը։

Ուրեմն, գործնականապէս կոմունիստները կազմում են բոլոր երկրների բանւորական կուսակցութիւնների մէջ ամենավճռական և միշտ առաջընթաց մասը․ տեսականապէս պրոլետարիատի, մնացած մասսայի հանդէպ նրանք ունեն այն առաւելութիւնը, որ ըմբռնում են պրոլետարական շարժման պայմանները, ընթացքը և ընդհանուր հետեւանքները։

Կոմունիստների մերձաւոր նպատակը նոյնն է, ինչ որ և բոլոր միւս պրոլետարական կուսակցութիւնների նպատակը, այսինքն, պրոլետարիատի կազմակերպումն իբրեւ դասակարգ, բուրժուազիայի տիրապետութեան տապալումը, քաղաքական իշխանութեան նուաճումը պրոլետարիատի միջոցով։

Կոմունիստների տեսական դրութիւնները բնաւ չեն հիմնւում այս կամ այն գաղափարի և սկզբունքի վրայ, որոնց հնարել կամ գտել է այս կամ այն համաշխարհային վերանորոգիչը։

Նրանք ընդհանուր արտայայտութիւն են գոյութիւն ունեցող դասակարգային կուի իրական յարաբերութիւնների, մեր աչքի առաջ կատարւող պատմական շարժման։ Հին սեփականատիրական յարաբերութիւնների տապալումը միայն կոմունիզմի բնորոշ յատկութիւնը չէ։

Բոլոր սեփականատիրական յարաբերութիւնները ենթակայ են եղել մշտական պատմական փոփոխութեան, մշտական պատմական կերպարանափոխութեան։ Այդպէս օրինակ, Ֆրանսիական յեղափոխութիւնը վերացրել է աւատական սեփականութիւնը յօգուտ բուրժուական սեփականութեան։

Կոմունիզմի բնորոշ յատկութիւնը կայանում է ոչ թէ սեփականութեան վերացման մէջ ընդհանրապէս, այլ մ ի ա յ ն բուրժուական սեփականութեան ոչնչացման մէջ։

Իսկ ժամանակակից բուրժուական մասնաւոր սեփականութիւնը կազմում է ապրանքների արտադրութեան և իւրացման վերջին, ամենակատարեալ արտայայտութիւնը, որն յենւում է դասակարգային հակադրութիւնների եւ մէկի հարստութեան վրայ՝

միւսի միջոցով։

Այդ իմաստով կոմունիստները կարող են ձեւակերպել իրենց թէօրիան հետեւեալ նախադասութեան մէջ. անհատական սեփականութեան ոչնչացումն։

Մեզ, կոմունիստներիս, մեղադրում են, որ իբր մենք կամենում ենք ոչնչացնել անձամբ վաստակած, անձնական աշխատանքով ձեռք բերած սեփականութիւնը, այն սեփականութիւնը, որ ամեն անհատական ազատութեան, գործունէութեան եւ անկախութեան հիմքն է կազմում։

Անձամբ վաստակա՛ծ, անձնական աշխատանքով ձեռք բերա՛ծ սեփականութիւն։ Արդե՞օք ձեր խօսքը մանր բուրժուական կամ մանր գիւղացիական սեփականութեան մասին է, որը նախորդել է բուրժուական սեփականութեանը, մենք կարիք չունենք ոչնչացնելու նրան—արդիւնաբերութեան զարգացումը ոչընչացրել է և ոչնչացնում է նրան ամեն օր։

Կամ գուցէ դուք խօսում էք ժամանակակից բուրժուական մասնաւոր սեփականութեան մասին։

Բայց մի՞թէ վարձու աշխատանքը, պրօլետարների աշխատանքը, սեփականութիւն է ստեղծում նրա համար։ Ոչ մի դէպքում։ Նա ստեղծում է կապիտալ, այսինքն մի սեփականութիւն, որը շահագործում է վարձու աշխատանքը և որը միայն այն դէպքում աճել կարող է, երբ նա նոր վարձու աշխատանք է արտադրում՝ նրան նորից շահագործելու համար։ Սեփականութիւնն իր այժմեան ձեւի մէջ շարժւում է կապիտալի և վարձու աշխատանքի մէջ տիրող հակադրութեան սահմանում։ Քննենք այդ հակադրութեան երկու կողմերն էլ։

Կապիտալիստ լինել՝ նշանակում է ոչ միայն

զուտ անձնական, այլ և հասարակական դիրք ունենալ արդիւնաբերութեան մէջ։ Կապիտալը ընդհանրական արդիւնք է և կարող է գործի դրուել միայն հասարակութեան շատ անդամների ընդհանուր գործունէութեամբ, վերջին հաշւով, հասարակութեան բոլոր անդամների գուծունէութեամբ։

Ուրեմն կապիտալը ոչ թէ անհատական, այլ հասարակական ոյժ է։

Եթէ ուրեմն կապիտալը դառնայ ընդհանրական հասարակութեան բոլոր անդամներին պատկանող սեփականութիւն, այն ժամանակ ոչ թէ անհատական սեփականութիւնը կը փոխուի հասարակականի, այլ միայն կը փոխուի սեփականութեան հասարակական բնաւորութիւնը․ Նա կը կորցնի իր դասակարգային բնաւորութիւնը։

Անցնենք վարձու աշխատանքին։

Վարձու աշխատանքի միջին գինը աշխատավարձի մինիմումն է, այն գումարը կենսական պիտոյքների, որոնք անհրաժեշտ են՝ բանւորին իբրեւ բանւոր պահպանելու համար։ Ուրեմն ինչ որ վարձու աշխատաւորը իւրացնում է իր գործունէութեամբ․ բաւականանում է միայն նրա մերկ գոյութիւնը նորից չարունակելու համար։

Մենք ոչ մի դէպքում չենք կամենում վերացընել աշխատանքի արդիւնքի այդ անհատական իւրացումը, որը անհրաժեշտ է անմիջական կեանքի պահպանութեան համար և որը ոչ մի զուտ արդիւնք չի թողնում, որով կարելի լինէր գնել օտարի աշխատանքը։ Մենք կամենում ենք միայն ոչնչացնել այդ իւրացման աղքատիկ բնաւորութիւնը երբ բանւորն ապրում է միայն կապիտալն աճեցնելու համար և մի-

այն այնքան է ապրում, որքան նրա կեանքը շահաւէտ է տիրող դասակարգի համար:

Բուրժուական հասարակութեան մէջ կենդանի աշխատանքը միայն մի միջոց է՝ կուտակւած աշխատանքը բազմապատկելու համար: Կոմունիստական հասարակութեան մէջ կուտակւած աշխատանքը միայն մի միջոց է՝ բանւորների կեանքը յարատեւելու, հարըստացնելու և բարւոքելու համար:

Ուրեմն բուրժուական հասարակութեան մէջ անցեալն իշխում է ներկայի վրայ, իսկ կոմունիստական հասարակութեան մէջ ներկան անցեալի վրայ: Բուրժուական հասարակութեան մէջ կապիտալն ինքնուրոյն է և անհատական, մինչդեռ գործօն անհատը ոչ ինքնուրոյն է և ոչ անհատական:

Եւ այն յարաբերութեան ոչնչացումը բուրժուազիան անւանում է անհատականութեան և ազատութեան ոչնչացում: Եւ իրաւացիօրէն: Անկասկած, գործը բուրժուայի անհատականութեան, բուրժուայի ինքնուրոյնութեան և բուրժուայի ազատութեան ոչնչացման մէջ:

Ներկայ բուրժուական արդիւնագործական պայմանների մէջ ազատութեան տակ հասկացւում է ազատ առեւտուր, ազատ գնումն և վաճառումն:

Բայց եթէ ընկնում է մանրավաճառութիւնը, ընկնում է նաեւ ազատ մանրավաճառութիւնը: Ազատ մանրավաճառութեան պաշտպանութիւնը, ինչպէս եւ առհասարակ բուրժուական մեծահնչիւն Փրազները ազատութեան պաշտպանութեան մասին, այդ բոլորը միաք ունեն միայն կաշկանդւած մանրավաճառի, միջին դարերի ճորտացած քաղաքացու վերաբերմամբ և ոչ թէ մանրավաճառութեան, բուրժուական արդիւ-

նագործական պայմանների և նոյն իրեն, բուրժուա-զիայի, կոմունիստական ոչնչացման վերաբերմամբ։

Դուք սարսափում էք նրանից, որ մենք կամենում ենք ոչնչացնել անհատական սեփականութիւնը։ Բայց գոյութիւն ունեցող ձեր հասարակութեան ինը-տասներորդականի համար նա ոչնչացուած է։ Նա գոյութիւն ունի հէնց այն պատճառով, որ այդ ինը-տասներորդականի համար գոյութիւն չունի։ Ուրեմն, դուք մեղադրում էք մեզ նրա մէջ, որ մենք կամենում ենք ոչնչացնել մի սեփականութիւն, որի գոյութեան անհրաժեշտ նախապայմանը հասարակութեան ահագին մեծամասնութեան սեփականազրկութիւնն է։

Մի խօսքով, դուք մեղադրում էք մեզ նրա մէջ, որ մենք կամենում ենք ոչնչացնել ձեր սեփականութիւնը։ Անկասկած, մենք կամենում ենք այդ։

Այն րոպէից, երբ աշխատանքն անկարող կը լինի այլ եւս վերածուել կապիտալի, դրամի, հողային հասոյթի, կարճ, մենավաճառի ենթարկուած հասարակական ոյժի, այսինքն այն րոպէից, երբ անհատական սեփականութիւնը կը դադարէ այլ եւս փոխուելու բուրժուական սեփականութեան, այդ րոպէից, յայտարարում էք դուք, մարդկային անհատը ոչնչացուած կը լինի։

Ուրեմն դուք խոստովանում էք, որ անհատի տակ դուք հասկանում էք միայն բուրժուային, բուրժուական սեփականատիրոջը։ Անկասկած, այդ անձնաւորութիւնը եւս պէտք է ոչնչացուի։

Կոմունիզմը չի զրկում ոչ ոքին հասարակական արդիւնքները իւրացնելու իրաւունքից, նա միայն թոյլ չի տալիս այդ իւրացման միջոցով հպատակեցնելու օտարի աշխատանքն։

Առարկում են, որ անհատական սեփականութեան ոչնչացումից յետոյ կը դադարէ ամեն գործունէութիւն և կը տիրէ ընդհանուր ծուլութիւն։

Ըստ դրա, բուրժուական հասարակութիւնը, իր անգործութեան շնորհիւ, վաղուց արդէն պէտք է խորտակուած լինէր, որովհետեւ նրանք, որոնք նրա մէջ աշխատում են, ոչինչ չեն վաստակում, իսկ նրանք, որոնք վաստակում են չեն աշխատում։ Ամբողջ տարակուսանքը բղխում է հետեւեալ կրկնութիւնից. չկայ վարձու աշխատանք այնտեղ, ուր այլ եւս կապիտալ չկայ։

Բոլոր այն առարկութիւնները, որոնք ուղղուած են նիւթական արդիւնքների կոմունիստական իւրացման ու արդիւնաբերութեան դէմ, տարածւում են նոյնպէս մտաւոր արգասիքների իւրացման եւ արտադրութեան վրայ։ Ինչպէս որ դասակարգային սեփականութեան ոչնչացումը բուրժուայի համար նշանակում է արդիւնաբերութեան ոչնչացումն, այնպէս էլ դասակարգային կրթութեան ոչնչացումն համազօր է նրա համար կրթութեան ոչնչացման առհասարակ։

Այն կրթութիւնը, որի կորուստը նա ափսոսում է, ահագին մեծամասնութեան համար մի ճանապարհ է դէպի մեքենացումն։

Բայց մի վիճիք մեզ հետ, քանի որ բուրժուական սեփականութեան ոչնչացման մասին դուք դատում էք համաձայն ձեր բուրժուական հասկացողութիւնների, որ դուք ունէք ազատութեան, կրթութեան, իրաւունքի և այլն մասին։ Ձեր գաղափարներն իրենք արդիւնք են բուրժուական արդիւնագործական և սեփականատիրական յարաբերութիւնների, ինչպէս որ ձեր իրաւունքը ձեր դասակարգի օրէնքի

վերածած կամքն է միայն, մի կամք, որի բովանդակութիւնը տուած է ձեր դասակարգի գոյութեան նիւթական պայմանների մէջ:

Այն աչառու գաղափարը, ըստ որի ձեր արդիւնագործական և սեփականատիրական յարաբերութիւնները դուք դարձրել էք պատմութեան և արդիւնագործութեան ընթացքում փոփոխւող յարաբերութիւններից բնութեան եւ բանականութեան յաւիտենական օրէնք, այդ գաղափարը ընդհանուր է և բոլոր նախկին տիրապետող դասակարգերին: Այն, ինչ որ դուք ըմբռնում էք, անտիկ սեփականութեան եւ աւատական սեփականութեան նկատմամբ, դուք այդ չէք ըմբռնում այլ եւս բուրժուական սեփականութեան նկատմամբ:

Ընտանիքի՛ ոչնչացում: Ամենածայրայեղ արմատականներն անգամ վրդովւում են կոմունիստների այդ քստմնելի դիտաւորութիւնից:

Ինչի՞ վրայ է յենւում ժամանակակից բուրժուական ընտանիքը: Կապիտալի վրայ, մասնաւոր հարստացման վրայ: Կատարեալ զարգացած ձեւով նա գոյութիւն ունի միայն բուրժուազիայի համար. բայց նա գտնում է իր լրացումը պրոլետարների բռնի ընտանեզրկութեան և հրապարակական պոռնկութեան մէջ:

Իր այն լրացման ոչնչացման հետ կոչնչանայ բնականօրէն և բուրժուական ընտանիքը, իսկ կապիտալի ոչնչացման հետ դրանք երկուսն էլ կանհետանան:

Գո՞ւցէ դուք մեզ մեղադրէք նրա մէջ, որ մենք կամենում ենք ոչնչացնել երեխաների շահագործութիւնը իրենց ծնողների ձեռքով: Այո, մենք խոս-

տովանում ենք այդ յանցանքը·

Բայց, ասում էք դուք, ընտանեկան կրթութիւնը հասարակականի փոխելով, մենք ոչնչացնում ենք դրանով ամենանուիրական յարաբերութիւնները։

Բայց մի՞թէ ձեր տուած կրթութիւնը եւս չի որոշւում հասարակութեամբ։ Հասարակական յարաբերութիւններով, որոնց մէջ դուք կրթում էք, հասարակութեան ուղղակի կամ անուղղակի միջամտութեամբ, դպրոցների կազմակերպութեամբ եւ այլն։ Կոմունիստները չեն հնարել հասարակութեան միջամտութիւնը կրթութեան մէջ· նրանք փոխում են միայն այդ միջամտութեան բնաւորութիւնը, ազատելով նրան տիրող դասակարգի ազդեցութիւնից։

Բուրժուական ճոռոմաբանութիւնները ընտանիքի եւ կրթութեան, ծնողների և զաւակների նուիրական յարաբերութիւնների մասին այնքան աւելի զզւելի են դառնում, որքան աւելի խոշոր արդիւնաբերութեան զարգացման շնորհիւ քայքայւում են պրոլետարների բոլոր ընտանեկան կապերը, որքան աւելի բանւորների երեխաները դառնում են առեւտրի հասարակ ապրանքներ, աշխատանքի գործիքներ։

Բայց դուք կոմունիստներդ կամենում էք համայնակնութիւն մտցնել, գոռում է մեր դէմ միաբերան ամբողջ բուրժուազիան։

Բուրժուան տեսնում է իր կնոջ մէջ միայն արդիւնաբերող գործիք։ Նա լսել է, որ արդիւնաբերութեան գործիքները պէտք է շահագործւեն համայնօրէն և մտածում է, որ կանայք եւս չպիտի խուսափեն համայնացման վիճակից։

Նա չի էլ կասկածում, որ խնդիրն հէնց այն դրութեան վերացման մէջ է, երբ կանայք արդիւնա-

բերող գործիքներ են բացառապէս։

Իհարկէ, մեր բուրժուաների բարձր բարոյական սարսափը կոմունիստների կարծեցեալ պաշտօնական համայնակնութեան առաջ միայն ծիծաղի արժան կարող է լինել։ Կոմունիստները կարիք չունեն համայնակնութիւն մտցնելու—նա գրեթէ միշտ գոյութիւն է ունեցել։

Զբաւականանալով նրանով, որ իրենց պրոլետարների կանայք և աղջիկները գտնւում են սեփական տրամադրութեան տակ—չենք խօսում դեռ պաշտօնական պոռնկութեան մասին—մեր բուրժուաները գտնում են գլխաւոր հաճոյքը իրենց ամուսիններին փոխադարձաբար հրապուրելու մէջ։

Իրականութեան մէջ բուրժուական ամուսնութիւնը ոչ այլ ինչ է, բայց եթէ համայնակնութիւն։ Կոմունիստներին ամենաշատը կարող են մեղադրել նրա մէջ, որ կեղծիքով քօղարկւած համայնակնութեան փոխարէն նրանք կամենում են մտցնել պաշտօնական, անկեղծ համայնակնութիւն։

Ինքնըստինքեան հասկանալի է իհարկէ, որ ներկայ արդիւնաբերական յարաբերութիւնների ոչընչացման հետ, կոչնչանայ նաեւ նրանցից առաջացող համայնակնութիւնը, այսինքն կանհետանայ պաշտօնական և ոչ պաշտօնական պոռնկութիւնը։

Ցետոյ, կոմունիստներին մեղադրում են նրա մէջ, որ նրանք իբր թէ կամենում են ոչնչացնել հայրենիքը, ազգութիւնը։

Աշխատաւորները հայրենիք չունեն։ Չի կարելի խլել նրանցից այն, ինչ որ նրանք չունեն։ Քանի դեռ պրոլետարիատը ձգտէ նւաճել քաղաքական իշխանութիւնը, հասնել ազգային դասակարգի աստիճանին եւ կազմակերպել ինքզինքն իբրեւ ազգ, այնքան դեռ նա

կը մնայ ազգային, թէպէտեւ մի ոչ դէպքում բուրժուազիայի իմաստով։

Ազգային սահմանափակութիւնը և ժողովրդների մէջ եղած հակադրութիւնները աւելի և աւելի են անհետանում արդէն իսկ բուրժուազիայի զարգացման, առեւտրի ազատութեան, համաշխարհային վաճառանոցի, ինդուստրիական արտադրութեան միակերպութեան և նրանց համապատասխան կենսական յարաբերութիւնների հետ։

Պրօլետարիատի տիրապետութիւնը դեռ աւելի կանհետացնէ նրան։ Առնուազն քաղաքակրթուած երկրների միացած գործունէութիւնը նրա ազատագրութեան առաջին պայմաններից մէկն է։

Այն չափով, որ չափով կոչնչանայ մի անհատի հարստահարութիւնը միւսի միջոցով, այդ չափով կոչընչանայ և մի ազգի հարստահարութիւնը մի այլ ազգի միջոցով։

Ազգութեան սահմանում գոյութիւն ունեցող դասակարգային հակադրութիւնների անկման հետ, կընկնի և ազգերի փոխադարձ թշնամական վերաբերմունքը։

Բոլոր մեղադրանքները, որոնք ուղղուած են կոմունիստների դէմ կրօնական, փիլիսոփայական եւ իդէօլօգիական հայեցակէտներից, արժանի չեն աւելի մանրամասն քննութեան։

Մի՞թէ շատ խորիմացութիւն է հարկաւոր հասկանալու, որ մարդկանց գոյութեան պայմանների, նրանց հասարակական յարաբերութիւնների, նրանց հասարակական գոյութեան հետ փոխւում են և նրանց հասկացողութիւնները, հայեցողութիւնները, գաղափարները, մի խօսքով նրանց ամբողջ գիտակցութիւնը

Ի՞նչ է ապացուցում գաղափարների պատմութիւնը, բայց եթէ ոչ այն, որ մտաւոր արտադրութիւնը փոխւում է նիւթական արտադրութեան հետ։ Մի որեւէ ժամանակի իշխող գաղափարները եղել են միշտ այդ ժամանակի տիրապետող դասակարգի գաղափարները։

Խօսում են գաղափարների մասին, որոնք յեղափոխում են մի ամբողջ հասարակութիւն. դրանով արտայայտում են միայն այն փաստը, որ հին հասարակութեան մէջ գոյացել են էլեմենտներ նոր հասարակութեան համար, որ հին կենսական պայմանների կործանման հետ զուգընթացաբար կատարւում է եւ հին գաղափարների կործանումը,

Հին աշխարհի անկման պահին հին կրօնները յաղթահարւեցին քրիստոնէական կրօնի կողմից։ Երբ 18-րդ դարում քրիստոնէական գաղափարները տեղի տւին լուսաւոր գաղափարներին, աւատական հասարակութիւնը մղում էր իր մահւան կռիւը այն ժամանակւայ յեղափոխական բուրժուազիայի դէմ։ Խղճի եւ կրօնի ազատութեան գաղափարները արտայայտում էին միայն ազատ մրցութեան տիրապետութիւնը գիտութեան աշխարհում։

«Սակայն, կասեն մեզ, կրօնական, բարոյագիտական, փիլիսոփայական, քաղաքական, իրաւական և այլ գաղափարները, փոխւել են անտարակոյս պատմական զարգացման ընթացքում։ Իսկ կրօնը, բարոյագիտութիւնը, փիլիսոփայութիւնը, քաղաքականութիւնը, իրաւունքը այդ փոփոխութեան ընթացքի մէջ կայուն են մնացել։

«Բացի այդ, կան յաւիտենական ճշմարտութիւններ, ինչպէս ազատութիւնը, արդարութիւնը և

այլն, որոնք ընդհանուր են բոլոր հասարակական դրութիւնների համար։ Իսկ կոմունիզմը վերացնել է կամենում յաւիտենական ճշմարտութիւնները. նա վերացնում է կրօնը, բարոյականութիւնը, փոխարէն նրանց վերանորոգելու, ուրեմն, նա հակասում է մինչայժմեան ամբողջ պատմական զարգացմանը»։

Ինչի՞ է յանգում այդ մեղադրանքը։ Մինչայժմեան բոլոր հասարակութիւնների պատմութիւնը շարժուել է դասակարգային հակադրութիւնների մէջ, որոնք արտայայտուել են միայն զանազան պատմական շրջաններում տարբեր ձեւերով։ Ինչ ձեւով էլ արտայայտուէին այդ հակադրութիւնները, այնուամենայնիւ հասարակութեան մի մասի հարստահարութիւնը միւսի միջոցով ընդհանուր փաստ է բոլոր անցեալ դարերի համար։ Զարմանալի չէ ուրեմն, որ բոլոր դարերի ընթացքում հասարակական գիտակցութիւնը, չնայելով իր բոլոր բազմօրինակութեանը և տարբերութեանը, շարժւում է միշտ որոշ ընդհանուր ձեւերի մէջ, գիտակցութեան ձեւերի, որոնք, կը չքանան միանգամայն միայն դասակարգային հակադրութիւնների կատարեալ անհետացմամբ։

Կոմունիստական յեղափոխութիւնը խզում է ամենաարմատական կերպով հնից ժառանգած սեփականատիրական յարաբերութիւնների հետ. ուրեմն զարմանալի չէ, որ իր զարգացման ընթացքում նա խզելու է ամենաարմատական կերպով և ժառանգած գաղափարների հետ։

Բայց թողնենք բուրժուազիայի մեղադրանքները կոմունիզմի դէմ։

Վերը արդէն մենք տեսանք, որ բանուորների յեղափոխութեան մէջ առաջին քայլը լինելու է պրո-

լետարիատի բարձրացումը մինչեւ տիրող դասակարգի աստիճանը և դէմօկրատիայի հաստատումը։

Պրօլետարիատը կօգտուի իր քաղաքական տիրապետութիւնից նրա համար, որպէսզի քայլ առ քայլ խլէ բուրժուազիայից նրա ամբողջ կապիտալը, կենտրոնացնէ արդիւնագործութեան բոլոր գործիքները պետութեան, այսինքն իբրեւ իշխող դասակարգ կազմակերպուած պրօլետարիատի ձեռքում և ըստ կարելւոյն արագ բազմապատկէ արդիւնագործական ոյժերը։

Սկզբում դա կարող է բնականաբար կատարուել միայն բռնի միջամտութեամբ սեփականութեան իրաւունքի և բուրժուական արդիւնագործական յարաբերութիւնների մէջ, ուրեմն այնպիսի միջոցներով, որոնք տնտեսապէս անբաւարար եւ խախուտ են թւում, բայց որոնք շարժման ընթացքում իրենք իրենց գերազանցում են և անխուսափելի են, իբրեւ միջոցներ, արդիւնագործութեան եղանակի յեղաշրջման համար։

Զանազան երկրների համար այդ միջոցները, բնականաբար, պէտք է տարբեր լինեն։

Սակայն ամենաքաղաքակիրթ երկրների համար կարող էին գրեթէ ընդհանուր գործադրութիւն գտնել հետեւեալ միջոցները։

1. Հողային սեփականութեան էքսպրօպրիացիան եւ հողային հասոյթի գործադրութիւնը պետական ծախքերի համար։

2. Ուժեղ պրօկրէսիւ-եկամտային հարկը։

3. Ժառանգութեան իրաւունքի ոչնչացումը։

4. Բոլոր դուրս գաղթողների եւ խռովարարների սեփականութեան արքունագրաւումը։

5. Կրեդիտի կենտրոնացումը պետութեան ձեռքում՝ ազգային բանկի, պետական կապիտալի եւ լիակատար մենաշնորհի միջոցով։

6. Փոխադրութեան միջոցների կենտրոնացումը պետութեան ձեռքում։

7 Ազգային գործարանների եւ արդիւնաբերող գործիքների բազմացումը. բոլոր հողերի ոռոգումը և մշակումի ընդհանուր նախագծով։

8. Հաւասարապէս պարտադիր աշխատանք բոլորի համար. արդիւնաբերող գնտերի հաստատութիւնը, մանաւանդ երկրագործութեան համար։

9. Երկրագործական եւ արդիւնաբերական ձեռնարկութիւնների միացումը. քաղաքի եւ գիւղի մէջ գոյութիւն ունեցող տարբերութիւնների վերացումը։

10. Բոլոր երեխաների համար ձրի եւ հասարակական կրթութիւն։ Երեխաների գործարանական աշխատանքի ներկայ ձեւի ոչնչացումը։ Կրթութեան եւ նիւթական արդիւնաբերութեան միացումը եւ այլն։

Երբ զարգացման ընթացքում դասակարգային տարբերութիւնները կանհետանան և արդիւնագործութիւնը կը կենտրոնանայ միաւորւած անհատների ձեռքում, այն ժամանակ հասարակական իշխանութիւնը կը կորցնի իր քաղաքական բնաւորութիւնը։ Իր իսկական նշանակութեամբ, քաղաքական իշխանութիւնը ոչ այլ ինչ է, բայց եթէ մի դասակարգի կազմակերպւած իշխանութիւն՝ մի այլ դասակարգ ճնշելու համար։ Երբ բուրժուազիայի դէմ մղւող կռւի մէջ պրօլետարիատը անհրաժեշտաբար կազմակերպւի իբրեւ դասակարգ, յեղափոխութեան միջոցով դարձնի ինքզինքն իշխող դասակարգ եւ՝ որպէս իշխող դասակարգ՝ բռնութեամբ ոչնչացնէ հին արդիւնագործա-

կան յարաբերութիւնների հետ կոչնչացնէ եւ դասակարգային հակադրութիւնների գոյութեան նախապատճառները, դասակարգերն ընդհանրապէս և դրանով սեփական դասակարգի իշխանութիւնը։

Հին բուրժուական հասարակութեան փոխարէն, իր դասակարգերով եւ դասակարգային հակադրութիւններով, ասպարէզ կգայ մի ասօցիացիա, ուր իւրաքանչիւր անհատի ազատ զարգացումը կը կազմի բոլորի զարգացման անհրաժեշտ նախապայմանը։



# III

# ՍՕՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՒ ԿՕՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

## 1) Յետադիմական Սօցիալիզմ

### ա) Ֆէօդալական Սօցիալիզմ

Ֆրանսիական և Անգլիական ազնուականութիւնը՝ ըստ իր պատմական դրութեան, կոչուած էր պարսաւագիրներ սարքելու ժամանակակից բուրժուական հասարակութեան դէմ։ 1830 թւականի Յուլիսեան Ֆրանսիական յեղափոխութեան, ինչպէս եւ Անգլիական շարժման ժամանակ՝ ի նպաստ պարլամենտական ռէֆօրմների, նա մի անգամ ևս յաղթուել է իր համար ատելի դարձած այդ նորեկի ձեռքից։ Լուրջ քաղաքական կռւի մասին այլ եւս խօսք չէր կարող լինել։ Նրա համար մնում էր միայն գրականական կռիւը։ Բայց գրականութեան ասպարիզում եւս անհնարին էին դարձել վերահաստատութեան ժամանակի հին ճոռոմաբանութիւնները։ Համակրութիւն ձեռք բերելու համար ազնուականութիւնը պէտք է արտաքուստ աչքաթող անէր իր սեփական շահերը եւ կազմէր իր ամբաստանագիրը բուրժուազիայի դէմ միայն շահագործւող բանւոր դասակարգի շահերի անունից։ Նա մեծ զւարճութիւն էր զգում մրմնջալու իր նոր տիրոջ ականջին նախատինքի երգեր եւ շատ թէ քիչ աղէտալի մարգարէութիւններ։

Այդպիսով ծագեց աւատական սօցիալիզմը․ կէս մրմունջ, կէս պասկւիլ, կէս անցեալի արձա-

գանք, կէս սպառնալիք ապագային. սոցիալիզմ, որը մերթ ընդ մերթ շանթում էր բուրժուազիային իր կծու, ուժեղ ու սրամիտ դատողութեամբ, բայց որը իր անընդունակութեամբ՝ ըմբռնելու նորագոյն պատմութեան ընթացքը, միշտ ծիծաղաշարժ է միայն։

Պրոլետարիատի մուրացկանական մախաղը նրանք ճօճում էին իրենց ձեռքում իբրեւ դրօշակ, որպէսզի ժողովուրդը իրենց շուրջը խմբեն։ Բայց հետեւելով նրանց, ժողովուրդը իսկոյն նշմարում էր նրանց մէջքին աւանդական ֆէօդալական զինանշանները և անպատկառ քրքիջով դէպի ամեն կողմ ցրւում։

Ֆրանսիական օրինաւորականների մի մասը եւ երիտասարդ Անգլիան ամենից լաւ խաղացին այդ կատակերգութիւնը։

Երբ ֆէօդալներն ապացուցում են, որ իրենց շահագործութեան եղանակը տարբեր է եղել բուրժուական շահագործութեան եղանակից, նրանք մոռանում են, որ իրենք շահագործել են բոլորովին տարբեր և այժմ արդէն հնացած հանգամանքների եւ պայմանների մէջ։ Երբ նրանք ապացուցում են, որ իրենց տիրապետութեան տակ ժամանակակից պրոլետարիատը գոյութիւն չունէր, նրանք մոռանում են, որ հէնց ժամանակակից բուրժուազիան մի անհրաժեշտ արգասիք էր իրենց հասարակական կազմի։

Բայց նրանք այնքան էլ չեն ծածկում իրենց քննադատութեան յետադէմ բնաւորութիւնը. նրանց գլխաւոր մեղադրանքը բուրժուազիայի դէմ կայանում է նրանում, որ բուրժուազիայի ռէժիմի տակ զարգանում է մի դասակարգ, որը պիտի օդը ցնդեցնէ հին հասարակութիւնը։

Նրանք յանդիմանում են բուրժուազիային գըլ-

խաւորապէս ոչ այն պատճառով, որ նա պրոլետարիատ է ստեղծում առհասարակ, այլ այն պատճառով, որ նա յեղափոխական պրոլետարիատ է ստեղծում:

Ուստի գործնական քաղաքականութեան մէջ նրանք մասնակցում են բանւոր դասակարգի դէմ ուղղուած բոլոր բռնութիւններին, իսկ առօրեայ կեանքում, չնայելով իրենց բոլոր մեծահնչիւն շատաբանութիւններին, մի րոպէ անգամ չեն մոռանում անձնական շահը եւ սիրոյ, հաւատարմութեան ու պատուի գաղափարները փոխարինում են բրդի, ճակնդեղի եւ արաղի հետ:

Ինչպէս տէրտէրը առաջ էր գնում միշտ ձեռք ձեռքի տուած ֆէօդալի հետ, այնպէս էլ կղերի սոցիալիզմը ֆէօդալների սոցիալիզմի հետ:

Ի՞նչն է աւելի հեշտ, քան քրիստոնէական ասկետութեանը սոցիալիստական գոյն տալը: Մի՞թէ քրիստոնէութիւնը չէր բողոքում մասնաւոր սեփականութեան, ամուսնութեան եւ պետութեան դէմ: Մի՞թէ դրանց տեղ նա չէր քարոզում բարեգործութիւն և մուրացկանութիւն, ամուրիութիւն և մարմնի մահացումն, անապատական կեանք և եկեղեցի, քրիստոնէական սոցիալիզմը ոչ այլ ինչ է, բայց եթէ սուրբ ջուր, որով տէրտէրն օրհնում է ազնուականի զայրոյթը:

### բ) Մանր բուրժուական սոցիալիզմ

Աւատական ազնուականութիւնը միակ դասակարգը չէ, որին տապալեց բուրժուազիան և որի գոյութեան նախապայմանները վնասւում ու մեռնում են ժամանակակից բուրժուական հասարակութեան մէջ: Միջնադարեան քաղաքացիութիւնը և մանր գիւ-

ղացիութեան դասը ժամանակակից բուրժուազիայի նախորդներն էին։ Արդիւնաբերութեան և առեւտրի տեսակէտից թոյլ զարգացած երկրներում այդ դասակարգը դեռ քարշ է տալիս իր գոյութիւնը առաջադիմող բուրժուազիայի կողքին։

Այն երկրներում, ուր զարգացել է ժամանակակից քաղաքակրթութիւնը, առաջ է եկել—եւ որպէս բուրժուական հասարակութեան լրացուցիչ մասը, միշտ նորից ծնունդ է առնում—մի նոր մանր բուրժուազիա, որը տարուբերւում է պրոլետարիատի եւ բուրժուազիայի մէջ և որի անդամները, մրցութեան շնորհիւ, նետւում են անդադար պրոլետարիատի շարքերը և նկատում, որ խոշոր արդիւնաբերութեան զարգացման հետ միասին մօտենում է այն ժամանակը, երբ իրենք, որպէս ինքնուրոյն մասը ժամանակակից հասարակութեան, կանհետանան միանգամայն և կը փոխարինուեն առեւտրի, մանուֆակտուրայի եւ երկրագործութեան մէջ վերակացուներով եւ ծառայողներով։

Ֆրանսիայի նման երկրներում, ուր գիւղական դասակարգը կազմում է ազգաբնակութեան աւելի քան կէսը, բնական էր, որ պրոլետարիատի շահերը պաշտպանող գրողները պէտք է քննադատէին բուրժուական տեսակէտից պէտք է յարձակւէին բանւորների կուսակցութեան վրայ։ Այդպէս ծագեց մանր բուրժուական սոցիալիզմը։ Այդ գրականութեան պարագլուխը Սիսմոնդին է, ոչ միայն Ֆրանսիայում, այլ եւ Անգլիայում։

Այդ սոցիալիզմը վերլուծեց ծայրայեղ սրամըտութեամբ ժամանակակից արդիւնագործական յարաբերութիւնների հակառակութիւնները։ Նա մերկացը-

*րեց տնտեսագէտների կեղծաւոր լաւատեսութիւնը։ Նա ապացուցեց անհերքելի կերպով մեքենայական արդիւնագործութեան եւ աշխատանքի բաժանման քայքայիչ հետեւանքները, կապիտալների և հողային սեփականութեան կենտրոնացումը, գերարտադրութիւնը, ճգնաժամերը, մանր բուրժուաների և գիւղացիների անխուսափելի անկումը, պրոլետարիատի թշուառութիւնը, հարստութեան բաժանման մէջ տիրող հրէշաւոր անարդարութիւնները, ազգերի փոխադարձ ինդուստրիական աւերիչ պատերազմները, հին սովորութիւնների, հին ընտանեկան յարաբերութիւնների և հին ազգութիւնների քայքայումը։*

*Սակայն ըստ իր դրական բովանդակութեան, այդ սոցիալիզմը կամենում է կամ վերահաստատել արդիւնագործութեան և հաղորդակցութեան հին միջոցները և դրանց հետ հին սեփականատիրական յարաբերութիւնները և հին հասարակութիւնը, կամ թէ նա կամենում է նորից սեղմել զոռով արդիւնագործութեան և հաղորդակցութեան ժամանակակից միջոցները հին սեփականատիրական յարաբերութիւնների սահմանների մէջ, սահմանների, որոնց այդ միջոցները խորտակել էին, որոնց նրանք պէտք է խորտակէին։ Երկու դէպքում էլ նա յետադէմ եւ միաժամանակ ուտոպիստական է։*

*Համքարական կազմ մանուֆակտուրայի մէջ եւ նահապետական գիւղատնտեսութեան—ահաւասիկ նըրա վերջին խօսքը։*

*Իր յետագայ զարգացման մէջ այդ ուղղութիւնը դարձաւ աղիողորմ բողոք։*

### գ) Գերմանական կամ «իսկական» սոցիալիզմ դ)

Ֆրանսիայի սոցիալիստական կոմունիստական գրականութիւնը, որ ծնունդ է առել իշխող բուրժուազիայի ճնշման տակ և այդ իշխանութեան դէմ ուղղուած կռուի գրականական արտայայտութիւնն է կազմում, ներմուծուեց Գերմանիա այն ժամանակ, երբ տեղական բուրժուազիան նոր էր սկսել իր կռիւը աւատական ինքնակալութեան դէմ:

Գերմանական փիլիսոփաները, կէս-փիլիսոփաները և իմաստագէտները սկսեցին յափշտակութեամբ ուսումնասիրել այդ գրականութիւնը, մոռանալով միայն, որ Ֆրանսիական գրականութեան հետ միաժամանակ Ֆրանսիայի կենսական պայմանները չեն տեղափոխուել Գերմանիա: Գերմանական պայմանների հանդէպ, Ֆրանսիական գրականութիւնը կորցրեց ամեն մի անմիջական գործնական նշանակութիւն եւ ընդունեց զուտ գրականական բնաւորութիւն: Այստեղ նա արտայայտուեց իբրեւ մի պարապ տեսութիւն մարդկային ճշմարիտ բնութեան մասին: Այդպէս, Ֆրանսիական առաջին յեղափոխութեան պահանջները 18-րդ դարի Գերմանական փիլիսոփաների համար

---

դ) Յիշեցնում ենք ընթերցողին, որ սոցիալիստական գրականութեան քննադատութիւնը Մանիֆէստի մէջ հասնում է մինչեւ 1847 թիւը: Ուստի այն բոլորը, ինչ որ ասւում է այս վերնագրի տակ «Գերմանական» սոցիալիզմի մասին, ոչ մի կերպով չի վերաբերում այժմեան Գերմանական սոցիալ-դէմոկրատիային: Մ. Մ.

միտք ունէին միայն, որպէս պահանջներ ընդհանուր «գործնական» բանականութեան, իսկ Ֆրանսիական յեղափոխական բուրժուազիայի ձգտումները ներկայանում էին նրանց, որպէս «մաքուր կամքի» օրէնքներ, իսկական մարդկային կամքի, ինչպէս նա պէտք է լինի:

Գերմանական գրական գործիչների միակ աշխատանքը կայանում է նրանում՝ համաձայնեցնել Ֆրանսիական նոր գաղափարները իրենց հին փիլիսոփայական դաւանանքի հետ, կամ աւելի ճիշտ, մընալով իրենց փիլիսոփայական հայեցակէտի վրայ, իւրացնել Ֆրանսիական գաղափարները:

Այդ իւրացումը կատարուեց նոյն ձեւով, ինչ ձեւով առհասարակ կատարւում է որեւիցէ օտար լեզուի իւրացումն, այսինքն թարգմանութեամբ:

Յայտնի է, որ հին կռապաշտական աշխարհի կլասիքական երկերը պարունակող ձեռագրերի սկզբին վանականները գրառում էին անհամ պատմուածքներ կաթոլիկ սրբերի մասին: Գերմանական գրական գործիչները վարւում էին Ֆրանսիական գրականութեան հետ միանգամայն հակառակը: Նրանք դնում էին իրենց փիլիսոփայական դատարկաբանութիւնները Ֆրանսիական բնագրից յետոյ: Օրինակ, փողային տնտեսութեան Ֆրանսիական քննադատութեան յետեւ նրանք դնում էին «մարդկային ճշմարիտ բնութեան օտարացումն», բուրժուական պետութեան Ֆրանսիական քննադատութեան յետեւ՝ «վերացական ընդհանուրի տիրապետութեան ոչնչացումն» եւ այլն:

Ֆրանսիական իրականութեան վերածումն այդ տեսակ փիլիսոփայական Ֆրազաբանութիւնների մը-

կըրուել է նրանց կողմից՝ իբրեւ «գործի փիլիսոփայութիւն», «Իսկական Սոցիալիզմ», «Սոցիալիզմի Գերմանական գիտութիւն», «Սոցիալիզմի փիլիսոփայական հիմնաւորում» եւ այլն:

Ֆրանսիական սոցիալիստական եւ կոմունիստական գրականութիւնը կորցրել էր իր լուրջ բնաւորութիւնը: Եւ որովհետեւ Գերմանացու ձեռքում նա դադարել էր արտայայտելու մի դասակարգի կռիւը միւսի դէմ, ուստի Գերմանացին եկաւ այն եզրակացութեան, որ նա կոչուած է լրացնելու «Ֆրանսիական միակողմանիութիւնը» եւ արտայայտելու ճշմարիտ կարիքների տեղ ճշմարտութեան կարիքը, պրոլետարիատի շահերի տեղ մարդկային էութեան շահերը, մարդու ընդհանրապէս, որը ոչ մի դասակարգի, որը առհասարակ ոչ թէ իրականութեանը, այլ փիլիսոփայական երեւակայութեան մշուշապատ եթերին է պատկանում:

Գերմանական այդ սոցիալիզմը, որ այդպէս լուրջ և հանդիսաւոր կերպով պոռում էր իր անտաշ դպրոցական վարժութիւնների մասին, ժամանակի ընթացքում կամաց-կամաց կորցրեց իր պեդանտական անմեղութիւնը:

Գերմանական և մանաւանդ պրուսական բուրժուազիայի կռիւը աւատների եւ ինքնակալ միապետութեան դէմ. մի խօսքով, ազատամիտ շարժումն հետզհետէ լուրջ բնաւորութիւն ընդունեց:

«Իսկական» սոցիալիզմին ներկայացաւ այդպիսով մի ցանկալի դիպուած՝ հակադրելու սոցիալիստական պահանջները քաղաքական շարժումին, աւանդական անէծքներ կարդալու լիբերալիզմի, ներկայացուցչական պետութեան բուրժուական մրցութեան,

մամուլի բուրժուական ազատութեան, բուրժուական իրաւունքի, բուրժուական ազատութեան և հաւասարութեան հասցէին եւ քարոզելու ժողովրդին, որ բուրժուական այդ շարժումից նա օգտուելու ոչինչ չունի եւ ենթարկւում է ամեն բան կորցնելու վտանգին։ Գերմանական սոցիալիզմը մոռացել էր ժամա, նակին որ՝ Ֆրանսիական քննադատութիւնը, որի անմիտ արձագանքն էր ինքը, ինկատի ունի ժամանակակից բուրժուական հասարակութիւնը՝ իրեն համապատասխան նիւթական պայմաններով եւ քաղաքական սահմանադրութեամբ, այսինքն այնպիսի նախապայմաններ, որոնց նուաճումն օրւայ խնդիրն էր Գերմանիայի համար։

Այդ սոցիալիզմը ծառայում էր Գերմանական ինքնակալ կառավարութիւններին, սրանց շրջապատող տէրտէրների, դպրոցական վարպետների, կալւածատէրերի և բիւրօկրատների հետ, իբրեւ մի ցանկալի խրտուիլակ՝ սպառնօրէն առաջ ընթացող բուրժուազիայի դէմ։

Նա կազմում էր մի քաղցր լրացումն մտրակային հարւածների և հրացանի գնդակների, որոնց միջոցով նոյն կառավարութիւնները պատասխանում էին Գերմանական բանւորների ապստամբութիւններին։

Եթէ «իսկական» սոցիալիզմը մի զէնք էր կառավարութիւնների ձեռքում Գերմանական բուրժուազիայի դէմ, միեւնոյն ժամանակ նա արտայայտում էր անմիջապէս մի յետադէմ շահ—Գերմանական մանըր բուրժուաների շահը։ Մանր բուրժուազիան, որը սկսած 16-րդ դարից գոյութիւն ունի Գերմանիայում եւ զանազան ձեւերի տակ միշտ նորից երեւան է գալիս այդտեղ, կազմում է Գերմանիայում գոյութիւն

ունեցող կարգերի իսկական հասարակական հիմքը։

Նրա պաշտպանումը՝ պաշտպանումն է ներկայումըս գոյութիւն ունեցող Գերմանական կարգերի։ Նա սոսկում է բուրժուազիայի արդիւնաբերական եւ քաղաքական տիրապետութիւնից, քաջ իմանալով, որ այդ տիրապետութիւնը մի կողմից կապիտալի կենտրոնացման և միւս կողմից յեղափոխական պրոլետարիատի զարգացման միջոցով իրեն անդունդ պիտի գլորէ։ Նրան թւում էր, թէ «իսկական» սոցիալիզմը ընդունակ է մի գնդակով երկու նապաստակ սպաննելու։ Եւ «իսկական» սոցիալիզմը տարածւում էր համաճարակի նման։

Այդ ծածկոյթը, որ գործուած էր մտազննութեան անպտուղ ոստայնից, զարդարուած պերճախօս ճոռոմաբանութիւնների ծաղիկներով և թրջուած հիացման արտասուքներով, այդ քնքոյշ ծածկոյթը, որի մէջ Գերմանական սոցիալիստները քօղարկում էին իրենց մի ջուխտ ոսկրացած «յաւիտենական ճշմարտութիւնները», նպաստում էր միայն նրանց ապրանքների արագ տարածման այդպիսի մի հասարակութեան մէջ

Գերմանական սոցիալիզմը իր կողմից միշտ աւելի և աւելի էր զգում իր կոչումը—այդ մանր բուրժուաների մեծազօր պաշտպանը լինելու։

Նա յայտարարեց Գերմանական ազգը իբրեւ նորմալ ազգ, իսկ Գերմանացի մանր բուրժուային իբրեւ նորմալ մարդ։ Վերջինիս ամեն մի ստորութեան մէջ նա տեսնում էր մի թագնուած, խոր սոցիալիստական իմաստ, որի մէջ այդ ստորութիւնը ստանում էր իր հակառակ նշանակութիւնը։ Յաջորդաբար այդպէս շարունակելով, նա յարձակւեց բացարձակ կեր-

պով կօմունիզմի «վայրենի, աւերիչ» ուղղութեան դէմ և յայտարարեց իրեն ամեն դասակարգային կըռիւներից բարձր: Քիչ բացառութեամբ, Գերմանիայում տարածւած բոլոր սօցիալիստական և կօմունիստական գրւածքները պատկանում էին այդ կեղտոտ եւ ջլատիչ գրականութեանը: է)

## 2) Պահպանողական կամ բուրժուական սօցիալիզմ

Բուրժուազիայի մի մասը ձգտում է դարմանել սօցիալական թշւառութիւնները՝ բուրժուական հասարակութեան գոյութիւնը ապահովեցնելու համար:

Այդ կարգին պատկանում են. տնտեսագէտները, Ֆիլանտրօպները, մարդասէրները, բանւոր դասակարգի դրութիւնը բարւոքել ցանկացողները, բարեգործութիւն կազմակերպողները, անասուններին հովանաւորողները, ժուժկալութեան ընկերութիւնների հիմնադիրները և բազմատեսակ թզուկ րէֆօրմատօրներ: Այդ բուրժուական սօցիալիզմը մինչեւ իսկ ամբողջ սիստէմներ է ստեղծել:

Իբրեւ օրինակ յիշենք Պրուդօնի «Philisophie de la Mesere»:

Սօցիալիստական բուրժուաները ցանկանում են

---

է) 1848 թւականի յեղափոխական մրրիկը արմատախիլ արաւ այդ գձուձ ուղղութիւնը եւ խլեց նրա ներկայացուցիչներից սօցիալիզմով զբաղւելու ամեն մի եռանդ: Այդ ուղղութեան գլխաւոր ներկայացուցիչը եւ կլասիքական տիպարն է Կարլ Գրիւնը:

ժամանակակից հասարակութեան գոյութեան պայմանները, առանց նրանցից անհրաժեշտօրէն առաջացող կռիւների և վտանգների: Նրանք ցանկանում են գոյութիւն ունեցող հասարակութիւնը, առանց նրա յեղափոխիչ և քայքայող տարրերի: Նրանք ցանկանում են բուրժուազիա, առանց պրօլետարիատի: Հասկանալի է, որ այն աշխարհը, որի մէջ իշխում է բուրժուազիան, թւում է նրանց իբրեւ ամենալաւ աշխարհը: Այդ մխիթարական երեւակայութիւնից բուրժուական սոցիալիզմը մշակել է մի կիսատ կամ կատարեալ սիստէմ: Եթէ նա պահանջում է պրօլետարիատից իրագործել իր սիստէմները և մտնել այդ ճանապարհով նոր Երուսաղեմ, դրանով իսկապէս նա միայն պահանջում է , որ պրօլետարիատն ապրէ ներկայ հասարակութեան մէջ, առանց նրան ատելու:

Այդ սոցիալիզմի մի երկրորդ տեսակը, որը աւելի գործնական է քան սիստէմատիկական, աշխատում է հեռու պահել բանւոր դասակարգը ամեն յեղափոխական շարժումից, ապացուցելով, որ ոչ թէ այս կամ այն քաղաքական փոփոխութիւնը, այլ միայն գոյութեան նիւթական պայմանների եւ տնտեսական յարաբերութիւնների փոփոխութիւնը կարող է օգուտ բերել բանւոր դասակարգին: Գոյութեան նիւթական պայմանների փոփոխութիւն ասելով, այդ սոցիալիզմը հասկանում է ոչ թէ բուրժուական արդիւնաբերական պայմանների ոչնչացումն, որը միայն յեղափոխական ճանապարհով է հնարաւոր, այլ վարչական բարւոքումներ, որոնք պէտք է կատարւեն այդ արդիւնաբերութեան պայմանների հողի վրայ և հետեւապէս ոչ մի փոփոխութիւն չեն մտցնում կապիտալի եւ վարձու աշխատանքի յարաբերութեան մէջ, այլ

լուագոյն դէպքում պակասեցնում են բուրժուազիա-յի համար նրա իշխանութեան ծախքերը եւ հասարա-կացնում նրա պետական տնտեսութիւնը:

Բուրժուական սոցիալիզմը գտնում է իր համա-պատասխան արտայայտութիւնը միայն այն ժամանակ, երբ նա դառնում է լոկ հռետորական ձեւ:

Ազատ առեւտո՛ւր—յօգուտ բանւոր դասակար-գի: Հովանաւորող մաքսե՛ր—յօգուտ բանւոր դասա-կարգի: Մենաւոր բանտարկութի՛ւն—յօգուտ բանւոր դասակարգի: Սա է բուրժուական սոցիալիզմի վերջին եւ միակ լուրջ արտասանած խօսքը:

Բուրժուազիայի սոցիալիզմը կայանում է ուղ-ղակի այն պնդումի մէջ, որ բուրժուան դարձել է բուրժուա՝ յօգուտ բանւոր դասակարգի:

## 3) Քննադատական - ուտոպիական սոցիալիզմ եւ կոմունիզմ

Այստեղ մենք չենք խօսում այն գրականութեան մասին, որը արտայայտում էր բոլոր մեծ ժամանա-կակից յեղափոխութիւնների մէջ պրոլետարիատի պահանջները:

Պրոլետարիատի առաջին փորձերը՝ ընդհանուր յուզման մի այդպիսի ժամանակ, աւատական հասա-րակութեան տապալման ընթացքում, անմիջապէս իրականացնելու իր դասակարգային ինտերեսը, անհը-րաժեշտաբար պէտք է փշրուէին թէ շնորհիւ իր՝ պը-րօլետարիատի, անզարգացած դրութեան և թէ նրա ազատագրութեան նիւթական պայմանների պակասու-թեան, պայմանների, որոնք արգասիք են հէնց բուր-

ժուական դարեշրջանի։ Այն յեղափոխական գրականութիւնը, որը ուղեկցում էր պրոլետարիատի այդ առաջին շարժումներին, իր բովանդակութեամբ անհրաժեշտ յետադիմական էր։ Նա քարոզում էր ընդհանուր ասկետութեան եւ բիրտ հաւասարութեան հաստատում։

Իսկական սոցիալիստական եւ կոմունիստական սիստէմները՝ Սէն-Սիմոնի, Ֆուրիէի, Օվէնի եւ ուրիշների սիստէմները երեւան են եկել պրոլետարիատի եւ բուրժուազիայի կռւի առաջին անզարգացած շրջանում, որը մենք ներկայացրել ենք վերեւում (տես «բուրժուաներ եւ պրոլետարներ» գլուխը)։

Այդ սիստէմների հեղինակները տեսնում էին դասակարգերի միջեւ գոյութիւն ունեցող հակադրութիւնը, ինչպէս և իշխող հասարակութեան մէջ եղած և նրանք քայքայող տարրերի ազդեցութիւնը։ Բայց նրանք չէին տեսնում պրոլետարիատի մէջ ոչ մի պատմական ինքնուրոյնութիւն, նրան յատուկ ոչ մի քաղաքական շարժում։

Որովհետեւ դասակարգային հակադրութիւնների զարգացումը առաջ է գնում նոյն քայլերով, ինչ որ է արդիւնաբերութեան զարգացումը, ուստի նրանք չէին կարողանում գտնել պրոլետարիատի ազատագրութեան նիւթական պայմանները եւ փորձում էին ձեռք բերել այդ պայմանները սոցիալական գիտութեան և սոցիալական օրէնքների գիւտի միջոցով։

Հասարակական գործունէութեան տեղը պէտք է բռնէ նրանց անձնական հնարչական գործունէութիւնը, ազատագրութեան պատմական պայմանների տեղը պէտք է բռնէին երեւակայական պայմանները, պրոլետարիատի ինքնաբերաբար առաջ ընթացող դա-

սակարգային կազմակերպութեան տեղը՝ նրանց ծրագրով կազմուած հասարակական կազմակերպութիւնը։ Գալիք համաշխարհային պատմութիւնը վճռում է նրանց համար պրոպագանդայի և իրենց հասարակական ծրագիրների գործնական իրականացման միջոցով։

Նրանք համոզուած են, որ իրենց ծրագիրներով պաշտպանում են գլխաւորապէս բանուոր դասակարգի շահը՝ իբրեւ ամենից շատ տառապող դասակարգի։ Եւ միայն այդ ամենից շատ տառապող դասակարգի տեսակէտից գոյութիւն ունի նրանց համար պրոլետարիատը։

Դասակարգային կռուի անզարգացած ձեւը, ինչպէս և անձնական կենսական դրութիւնը կարծել են տալիս նրանց, որ իրենք կանգնած են այդ դասակարգային հակադրութիւններից բարձր։ Նրանք կամենում են բարւոքել հասարակութեան բոլոր՝ նոյնպէս եւ ամենալաւ դրուած, անդամների կենսական դրութիւնը։ Այդ պատճառով նրանք անընդհատ դիմում են, առանց խտրութեան, ամբողջ հասարակութեանը, մինչեւ անգամ առաւելապէս իշխող դասակարգին։ Հարկաւոր է միայն ըմբռնել նրանց սիստէմը, որպէսզի կարելի լինի ընդունել նրան՝ իբրեւ լաւագոյն ծըրագիր լաւագոյն հասարակական կազմի։

Այդ պատճառով նրանք հերքում են ամեն քաղաքական, այսինքն ամեն յեղափոխական գործունէութիւն. նրանք կամենում են հասնել իրենց նպատակին խաղաղ ճանապարհով եւ փորձում են փոքրիկ, բնականաբար անաջող փորձերով, օրինակների զօրութեամբ, ճանապարհ բաց անել նոր հասարակական աւետարանի համար։

Ապագայ հասարակութեան երեւակայական նը-

կարագրութիւնը ծնունդ առաւ մի այնպիսի ժամանակ, երբ պրոլետարիատը դեռ զարգացած չէր, երբ նա պատկերացնում էր հետեւապէս իր սեփական դրութիւնը միանգամայն երեւակայական գոյներով, որոնք համապատասխանում են պրոլետարիատի առաջին բնազդական ձգտմանը՝ միանգամայն յեղաշրջելու հասարակութիւնը:

Այդ սոցիալիստական և կոմունիստական գրուածքները պարունակում են իրենց մէջ և քննադատական տարրեր: Նրանք յարձակւում են գոյութիւն ունեցող հասարակութեան բոլոր հիմքերի վրայ: Այդ պատճառով նրանք պարունակում են իրենց մէջ մի վերին աստիճանի թանկագին նիւթ՝ բանւորներին լուսաւորելու համար: Նրանց դրական դրութիւններն ապագայ հասարակութեան վերաբերեալ՝ օրինակ քաղաքի եւ գիւղի միջեւ եղած հակադրութեան, ընտանիքի, մասնաւոր սեփականութեան և վարձու աշխատանքի վերացումը, հասարակական ներդաշնակութեան յայտարարումը, պետութեան վերածումը լոկ արդիւնագործական վարչութեան, բոլոր այդ դրութիւնները արտայայտում են միայն դասակարգերի հակադրութեան ոչնչացումը, որը հազիւ նոր էր սկսում զարգանալ և որը ծանօթ էր նրանց իր առաջին սաղմային անորոշութեան մէջ: Ուստի այդ դրութիւններն իսկ կրում են դեռ մաքուր ուտոպիստական բնաւորութիւն:

Քննադատական-ուտոպիստական սոցիալիզմի եւ կոմունիզմի նշանակութիւնը գտնւում է պատմական զարգացման ընթացքի հետ ներհակ յարաբերութեան մէջ: Քանի աւելի է զարգանում եւ ծաւալւում դասակարգային կռիւը, այնքան աւելի է այդ երեւակա-

յական ձգտումը՝ լինել բարձր դասակարգային կռուից, այդ ֆանտաստիկական մաքառումը նրա դէմ, կորցնում ամեն գործնական արժէք, ամեն տեսական արդարացում։ Եթէ, այդ պատճառով, այդ սիստէմների հիմնադիրները շատ կողմերից յեղափոխական էին, նրանց աշակերտներն ամեն անգամ ներկայացրնում են յետադէմ աղանդներ։ Նրանք խստօրէն դաւանում են վարպետների հին հայեացքները, առանց ինկատի առնելու պրօլետարիատի յետագայ պատմական զարգացումը։ Այդ պատճառով նրանք նորից ձգնում են մեղմացնել դասակարգային կռիւը եւ անհետացնել հակադրութիւնները։ Նրանք դեռ շարունակ երազում են իրականացնել, օրինակի համար, իրենց հասարակական ուտօպիաները․ հիմնել առանձին «ֆալանստիրներ», ներքին գաղութներ (Home Kolonien) հաստատել մի փոքրիկ «Իկարիա» ը) — նոր Երուսաղեմի այդ գրպանի հրատարակութիւնը։ Եւ բոլոր այդ օդային ամրոցների կառուցման համար նրանք պէտք է դիմեն բուրժուական սրտերի և փողի քսակների մարդասիրութեանը։ Կամաց-կամաց նրանք ընկնում են վերը նկարագրած յետադիմական և պահպանողական սօցիալիստների շարքերը և տարբերւում են նրանցից միայն իրենց սիստէմատիկական իմաստակա-

---

ը) «Ֆալանստիր» կոչւում էին Ֆուրիէի ծրագրւած հասարակական պալատները։ Home Kolonien անւանում է Օվէնը իր օրինակելի կօմունիստական հասարակութիւնները։ «Իկարիա» էր կոչւում այն երեւակայական ուտօպիական աշխարհը, որի կօմունիստական հիմնարկութիւնները նկարագրել է Կաբէն։

նութեամբ ու մոլեռանդ հաւատով դէպի իրենց սոցիալական գիտութեան հրաշագործութիւնները:

Ահա թէ ինչու նրանք այդպէս զայրացած դիմադրում են բանւորների ամեն մի քաղաքական շարժումին, որը նրանց կարծիքով կարող է միայն առաջ գալ շնորհիւ կոյր անհաւատութեան դէպի այդ նոր աւետարանը:

Օվէնիստները Անգլիայում, Ֆուրիէրիստները Ֆրանսիայում՝ այնտեղ մաքառում են չարտիստների, այստեղ րէֆորմի կողմնակիցների դէմ:

# IV

## ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՄՈՒՆՔԸ ԴԷՊԻ ԶԱՆԱԶԱՆ ԴԻՄԱԴՐԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Այն ամենից յետոյ, ինչ որ ասւած է երկրորդ գլխում, կոմունիստների վերաբերմունքը դէպի արդէն գոյութիւն ունեցող զանազան բանւորական կազմակերպութիւնները ինքնըստինքեան հասկանալի է. ուրեմն պարզ է նրանց վերաբերմունքը դէպի չարտիստներն Անգլիայում և հողային րէֆորմի կողմնակիցները Հիւսիսային Ամերիկայում:

Նրանք կռւում են յանուն բանւոր դասակարգի մերձաւոր նպատակների եւ շահերի իրագործման, բայց նրանք պաշտպանում են ներկայ շարժման մէջ միաժամանակ և շարժման ապագան: Ֆրանսիայում

կոմունիստներն յարում են սօցիալիստական-դէմօկըրատական կուսակցութեանը՝ *) ընդէմ պահպանողական և արմատական բուրժուազիայի, պահպանելով միևնոյն ժամանակ իրաւունք՝ քննադատաբար վերաբերուելու դէպի աւանդական յեղափոխական ֆրազներն ու ցնորքները։

Զուիցերիայում նրանք օգնում են արմատականներին, առանց մոռանալու, որ այդ կուսակցութիւնը կազմուած է հակադրական տարրերից. մասամբ դէմօկըրատ սօցիալիստներից ֆրանսիական մտքով, մասամբ արմատական բուրժուաներից։

Լեհաստանում կոմունիստներն օգնում են այն կուսակցութեանը, որը ընդունում է հողային յեղափոխութիւնը իբրեւ նախապայման ազգային ազատագրութեան, այն կուսակցութեանը, որը առաջ է բերել 1846 թւականին Կրակովի ապստամբութիւնը։

Գերմանիայում կոմունիստական կուսակցութիւնը քայլում է բուրժուազիայի հետ, քանի սա յեղափոխական է, ընդէմ ինքնակալ միապետութեան, աւատական հողային սեփականութեան եւ մանր բուրժուազիայի։

---

*) Այն ժամանակ Ֆրանսիայում իրեն սօցիալիստական-դէմօկրատական անուանող կուսակցութիւնը ներկայացուած էր քաղաքականութեան մէջ Լեդրիւ-Ռօլէնի և գրականութեան մէջ Լուի Բլանի միջոցով, ուրեմն նա երկնքի նման հեռու էր այժմեան Գերմանական սօցիալդէմօկրատիայից։

Բայց նա մի վայրկեան անգամ չի դադարում զարգացնելու բանուորների մէջ ըստ կարելոյն պարզ գիտակցութիւն բուրժուազիայի եւ պրօլետարիատի միջեւ գոյութիւն ունեցող թշնամական յարաբերութեան վերաբերմամբ, որպէսզի Գերմանական բանւորները կարողանան այն հասարակական և քաղաքական պայմանները, որոնց պէտք է առաջացնէ իր տիրապետութեամբ բուրժուազիան, իսկոյն և եթ դարձընել՝ իբրեւ զէնք՝ նոյն բուրժուազիայի դէմ, որպէսզի Գերմանիայի յետադէմ դասակարգերի անկումից յետոյ, անմիջապէս կռիւ սկսուի հէնց իր, բուրժուազիայի դէմ:

Կոմունիստները դարձնում են իրենց գլխաւոր ուշադրութիւնը Գերմանիայի վրայ, որովհետեւ Գերմանիան գտնւում է բուրժուական յեղափոխութեան նախօրեակին և որովհետեւ այդ յեղաշրջումն կատարւելու է Եւրոպական քաղաքակրթութեան անհամեմատ աւելի առաջադէմ պայմանների մէջ ընդհանրապէս և անհամեմատ աւելի զարգացած պրօլետարիատի մասնակցութեամբ, քան Անգլիայում 17-դ և Ֆըրանսիայում 18-դ դարում: Այդպիսով Գերմանական բուրժուական յեղափոխութիւնը կարող է պրօլետարական յեղափոխութեան անմիջական նախերգանքը լինել:

Մի խօսքով, կոմունիստները ամենուրեք օգնում են ամեն մի յեղափոխական շարժման՝ գոյութիւն ունեցող հասարակական եւ քաղաքական պայմանների դէմ:

Բոլոր այդ շարժումների մէջ նրանք տալիս են առաջին տեղը սեփականութեան խնդրին—անկախ նըրանցից, թէ ի՛նչ չափով է նա զարգացած—որպէս

շարժման հիմնական խնդրի։

Վերջապէս կոմունիստները աշխատում են ամենուրեք միութիւն և համերաշխութիւն հաստատել բոլոր երկրների ռամկավարական կուսակցութիւնների մէջ։

Կոմունիստները ամօթ են համարում թագցնել իրենց հայեացքները և դիտաւորութիւնները։ Նրանք յայտարարում են բացարձակ կերպով, որ իրենց նպատակներին կարող են հասնել միայն մինչայժմեան ամբողջ հասարակական կազմի բռնի տապալումով։ Թ'ող իշխող դասակարգերը դողան կոմունիստական յեղափոխութեան առաջ։ Նրա մէջ պրոլետարները ոչինչ չունեն կորցնելու, բացի իրենց շղթաներից։ Իսկ ձեռք կը բերեն մի ամբողջ աշխարհ։

*Պրօլետարներ բոլոր երկիրների՝ միացէ՛ք*

